ՀԱՅ ՄԱՏԵՆԱԳԻՐՆԵՐ

# ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ

# ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ ՀԱՅՈՑ

թարգմանություն, ներածություն և ծանոթագրություններ ակադեմիկոս Ստ. Մալխասյանցի

«ՀԱՅԱՍՏԱՆ» հրատարակչություն
Երևան
1968

9(C42)
Ф 26

Խմբագրական կոլեգիա՝

ԱԲՐԱՀԱՄՅԱՆ Ա. Ա., ԱՌԱՔԵԼՅԱՆ Վ. Դ.,
ԲԱՐՍԵՂՅԱՆ Խ. Հ., ԽԱՉԻԿՅԱՆ Լ. Ս.,
ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ Ս. Գ., ՄԵԼԻՔ-ՕՀԱՆՋԱՆՅԱՆ Կ. Ա.,
ՄԻՐԻՋԱՆՅԱՆ Լ. Վ., ՈՒԹՄԱԶՅԱՆ Հ. Մ.

Բնագրի հետ համեմատեցին, խմբագրեցին
Ա. Ա. ԱԲՐԱՀԱՄՅԱՆԸ և Վ. Դ. ԱՌԱՔԵԼՅԱՆԸ

ФАВСТОС БУЗАНД

**ИСТОРИЯ АРМЕНИИ**

1—6—4

(На армянском языке)
Издательство «Айастан»
Ереван, 1968

## ԽՄԲԱԳՐՈՒԹՅԱՆ ԿՈՂՄԻՑ

Փավստոս Բուզանդի «Հայոց պատմություն» գրքի ներկա աշխարհաբար հրատարակությունը ակադեմիկոս Ստ. Մալխասյանցի թարգմանությունն է, որ առաջին անգամ լույս է տեսել 1947 թվականին: Սակայն այս հրատարակությունը զգալապես տարբերվում է նախորդից: Խմբագրությունը նպատակահարմար գտավ հիմնովին վերանայել, լրացնել, ճշտել ու բարեփոխել հիշյալ թարգմանությունը: Այսպիսով, Փավստոսի երկի աշխարհաբար թարգմանությունը ընթերցողին է ներկայացվում բազմաթիվ փոփոխություններով ու լրացումներով: Նախ՝ թարգմանվել են այն հատվածները, որոնք այս կամ այն պատճառով բաց էին թողնված նախորդ հրատարակության մեջ (համեմատի՛ր IV, Ե թարգմ. էջ 150, բնագիր՝ 83—88, VI, Գ թարգմ. էջ 242, բնագիր՝ 200—202, V, ԼԱ թարգմ. էջ 269, բնագիր՝ 236 և այլն): Բնագրի հիման վրա բազմաթիվ տեղեր թարգմանվել են նոր մոտեցումով, հայ բանասիրության վերջին նվաճումների տեսանկյունից:

Վերանայված են թարգմանչի ծանոթագրությունները, ուր կատարված են որոշ անհրաժեշտ կրճատումներ և մասնակի լրացումներ:

Ժամանակակից հայերենի օրինաչափությունների նկատառումով թարգմանության լեզուն և ոճը հիմնավորապես վերանայված են: Մասնակի փոփոխության է ենթարկված նաև ներածությունը: Այս հրատարակության մեջ օգտագործվել է նաև Վարագ Առաքելյանի գրախոսությունը Փավստոսի երկի աշխարհաբար թարգմանության մասին (ՀՍՍՀ ԳԱ լեզվի ինստիտուտի «Աշխատությունների ժողովածու», հատոր III, Երևան, 1948 թ.):

Թարգմանությունը բնագրի հետ համեմատելով բարեփոխեցին և խմբագրեցին Վ. Գ. Առաքելյանը և Ա. Ա. Աբրահամյանը:

# ՆԵՐԱԾՈՒԹՅՈՒՆ

Փավստոս Բուզանդ.— Պատմության համառոտ բովանդակությունը.— Դպրությունների հարցը.— Կարծիքներ Պատմության ծավալի, լեզվի, գրության ժամանակի և հեղինակի ազգության մասին.— Ա և Բ դպրությունները եղե՞լ են, թե ոչ.— Փաստարկումներ հօգուտ հեղինակի հույն լինելուն և նրանց քննությունը.— Փաստարկումներ հօգուտ հեղինակի հայ լինելուն.— Հեղինակը ժամանակակից չէ.— Ակնարկություններ Ե դարի անցքերի վրա.— Ժամանակագրություն չունի.— Պատմության հայ գրավոր աղբյուրները.— Գրության ժամանակը.— Հեղինակի հայասիրությունը.— Լեզուն, ոճը.—Ո՞վ է հեղինակը.— Փավստոս Բուզանդ անունը.— Բուզանդարանի էությունը.— Զրույցների գլխավոր տարրերը.— Հոգևոր վեպ.— Արքունական տան վեպ.— Մամիկոնյան տան վեպ.— Խորենացի և Փավստոս.— Բնագրի տպագրություններն ու թարգմանությունները.— Ներկա թարգմանության հանգամանքները:

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴ—ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՌՈՏ ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆԸ

Հինգերորդ դարից մեր ձեռքն է հասել մի պատմական հիշատակարան, որ կրում է «Փաւստոսի Բուզանդացւոյ պատմութիւն Հայոց», կամ ավելի հին, իսկական անունով՝ «Բուզանդարան պատմութիւնք» վերնագիրը: Այս գրվածքը պարունակում է Հայոց պատմությունը՝ սկսած Տրդատի որդի և հաջորդ Խոսրով Կոտակից մինչև Հայաստանի երկու մասի բաժանվելը Պարսից և Հունաց միջև, այսինքն՝ 319-ից մինչև 384 թվականը, ուրեմն 65 տարվա պատմություն: Գրվածքը բաժանված է չորս դպրության, որոնք կոչված են Երրորդ, Չորրորդ, Հինգերորդ և Վեցերորդ դպրություններ: Երրորդ դպրության վերնագրում դրված է «Սկիզբն» բառը, Վեցերորդ դպրու-

թյան վերնագրում՝ «Վերջ» բառը, որոնք ցույց են տալիս, թե գրվածքն ընկըսվում է Երրորդ դպրությամբ և վերջանում Վեցերորդով: Դպրությունները բաժանված են մանրամասն վերնագրեր ունեցող գլուխների: Երրորդ դպրությունը բաղկացած է 21 գլխից և ընդգրկում է Խոսրով Կոտակի ու Տիրանի թագավորությունների ժամանակաշրջանը: Չորրորդ դպրությունը բաղկացած է 59 գլխից և ընդգրկում է Արշակի թագավորության շրջանը մինչև նրա Անհուշ բերդում բանտարկվելը: Հինգերորդ դպրությունը բաղկացած է 44 գլխից և վերաբերում է Պապի ու Վարազդատի թագավորությունների ժամանակին, Արշակի և Վաղարշակի թագավորելուն: Վեցերորդ դպրությունը բաղկացած է 16 գլխից, որոնցից առաջինում պատմվում է Հայաստանի երկու մասի բաժանվելը Պարսից և Հունաց միջև՝ Արշակ ու Վաղարշակ թագավորներով, իսկ հաջորդ 15 գլուխները պարունակում են համառոտ տեղեկություններ մի քանի հայ եպիսկոպոսների մասին:

Թագավորների պատմության հետ մեծ տեղ է տրված նաև Մամիկոնյան ցեղից մի քանի սպարապետների պատմության, ինչպես՝ Վասակի, Մուշեղի, Մանուելի, որոնք դուրս են բերված իբրև անձնվեր, քաջահաղթ կռվողներ, հայրենիքի, եկեղեցու և բնիկ Արշակունի հայ թագավորների համար ապրող ու մեռնող հերոսներ: Քաղաքական պատմությանը զուգընթաց ընդարձակ տեղեկություններ են հաղորդված հայ նշանավոր հոգևորականների մասին, որոնց մեջ կենտրոնական տեղ է գրավում Ներսես Մեծը: Բերված են նրանց վարքը, քարոզները, աղոթքները, կատարած բարեգործությունները ու հրաշագործությունները: Հեղինակի անձի մասին Գ դպրության վերջում կա այսպիսի հիշատակարան. «Կատարեցաւ երրորդ դարք քսան և մի պատմութեանց դպրութիւնք, ժամանակագիր կանոնք Փաւստեայ (տպված է՝ փախստեայք) Բիւզանդեայ մեծի պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց»: Իսկ Վեցերորդ դպրության ցանկի վերջում՝ հետևյալը. «Ստորոտ ամենայն պատմութեանց, յաղագս իմ տեղեկութեան, որք միանգամ զմատեանս ընթեռնույք՝ տունք տասն համարական թուօք»: Սակայն գրքի վերջում այս տասը տունը չկա:

## ԴՊՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՀԱՐՑԸ

Գիրքն ունի առաջաբան, որի մեջ հեղինակը (կամ խմբագրողը), առաջին դեմքով (եզակի) խոսելով, հայտնում է, որ գիրքը բաղկացած է չորս դպրությունից, Երրորդից Վեցերորդ, որոնք պարունակում են Հայոց պատմությունը Խոսրով Կոտակից մինչև Հայոց թագավորության անկումը, այսինքն՝ ցույց է տալիս գրքի ծավալն ու բովանդակությունը ճիշտ այնպես, ինչպես որ ներկայումս գոյություն ունի: Իսկ Գ. դպրության Ա գլխում ուրիշ բան ենք տեսնում: Այստեղ հեղինակը (կամ խմբագրողը), առաջին դեմքով (հոգնակի) խոսելով, հայտնում է, թե «Թադեոս առաքյալի քարոզությունից և նրա մարտիրոսական վախճանից մինչև Գրիգորի վարդապետության վերջը... և առաքելասպան Սանատրուկ թագավորից մինչև

Տրդատ թագավորի... վախճանը... ուրիշների կողմից արդեն գրված են: Բայց մենք էլ մեր պատմության ընթացքում փոքրիշատե նշանակեցինք... սլատշաճ կարգը պահպանելու համար, որովհետև տեղ կա, որ մեր պատմությունը առաջինն է, տեղ կա, որ վերջինը, իսկ ինչ որ միջին է, այն ուրիշների ձեռքով արդեն գրվեց»: Այս խոսքերից երևում է, թե հեղինակը միջին է կոչում պատմական անցքերը Սանատրուկից մինչև Տրդատի մահը: Վերջին է կոչում պատմական անցքերը Տրդատի որդու՝ Խոսրովի ժամանակից այս կողմ, այսինքն՝ այն, ինչ ներկայումս գտնում ենք Փավստոսի Պատմության մեջ: Ըստ այսմ՝ հեղինակի կոչած «մեր պատմության» առաջին մասը կազմելիս են եղել պատմական անցքերը Սանատրուկից առաջ, և հեղինակը այս առաջին մասը վերջին մասի, այսինքն՝ Խոսրովի և հաջորդների պատմության հետ կապելու համար հիշատակում է ուրիշներից գրված միջին մասը Սանատրուկից մինչև Տրդատ, որպեսզի պատմության ընթացքը չընդհատվի, կամ ինչպես ինքն է ասում՝ որպես մի աղյուս դրված շենքի պատի մեջ: Այս խոսքերից հետևում է, թե «մեր պատմության» հեղինակը գրած է եղել նաև «Հայաստանի պատմությունը», նախքան Սանատրուկի թագավորելը, որ ոչ միայն մեր այժմյան բնագրերում չկա, այլև հակասում է առաջաբանին, ըստ որի՝ Փավստոսի Պատմությունը բաղկացած է ընդամենը չորս դպրություններից (Գ—Զ), որոնք անմիջապես հասել են մեր ձեռքը:

Բացի վերոհիշյալ կարևոր հակասությունից, այս Պատմության մեջ աչքի են ընկնում մի շարք *տարօրինակություններ*, այսպես են՝ ժամանակագրության բացակայություն, կամ ժամանակագրական տվյալների մեջ անպատեհություն, գլուխների ոչ հաջորդական դասավորություն, այնպես որ շատ գլուխներ կարելի է իրենց տեղերից հանել և ուրիշ տեղ դնել՝ առանց խանգարելու պատմության ընթացքը: Արշակ թագավորի և Շապուհի միջև մղված երեսնամյա պատերազմի մեջ, որին նվիրված են Փավստոսի դպրության ԻԶ—ԽԹ գլուխները, անտեղի կերպով ընկած ԽԴ գլուխը՝ Պապ թագավորի կյանքի նկարագրով:

Վերը տեսանք, որ Պատմության առաջաբանը և Ա գլուխը միմյանց հակասում են, և հարց է ծագում՝ արդյոք լրի՞վ է հասել մեր ձեռքը այս Պատմությունը, թե սկզբից թերի է: Դարձյալ բանասիրության համար վիճելի հարցեր են—ո՞վ է այս Պատմության հեղինակը, հա՞յ, թե մի օտարազգի. ի՞նչ առնչություն ունի գրքի վրա դրոշմված Փավստոս անունը գրքի հեղինակի հետ. ի՞նչ լեզվով է գրված Պատմությունը, հայերե՞ն, թե մի ուրիշ լեզվով, այսինքն՝ մեր ձեռքին եղած գրվածքը բնագի՞ր է, թե թարգմանություն. ե՞րբ է գրված այս Պատմությունը, ինչո՞վ պետք է բացատրել վերոհիշյալ տարօրինակությունները: Այս հարցերի քննությանը և լուծմանը նվիրված են շատ ուսումնասիրություններ, և դեռ չեն գտնված ընդհանուրին ընդունելի պատասխաններ:

Հարկավոր ենք համարում համառոտակի մեջ բերել զանազան բանասերների կողմից այս հարցերի մասին հայտնված կարծիքները, որքան մեզ հայտնի են:

## ԿԱՐԾԻՔՆԵՐ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԾԱՎԱԼԻ, ԼԵԶՎԻ, ԳՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԻ ԵՎ ՀԵՂԻՆԱԿԻ ԱԶԳՈՒԹՅԱՆ ՄԱՍԻՆ

Փավստոսի Պատմության առաջին քննադատը եղել է դեռ հինգերորդ դարի վերջերին Ղազար Փարպեցին: Նա հիշելով նախընթաց երկու պատմիչներին՝ Ագաթանգեղոսին և Փավստոսին, վերջինիս մասին հետևյալն է ասում. «Երկրորդ Պատմության հեղինակ են կոչում մի ոմն Փավստոս Բյուզանդացու: Բայց որովհետև նրա Պատմության մեջ տեղ-տեղ պատահում են ոչ հարմար և ոչ պատշաճ խոսքեր... ուստի ստիպվում եմ ասել, թե այդպիսի անպատշաճ գրվածքի հեղինակ չէր կարող լինել Բյուզանդիայում ուսած մարդ (կամ բյուզանդացի ուսումնական)... Արդ՝ այսպիսի քաղաքում և այնքան ուսումնական մարդկանց մեջ կրթություն ստացած Փավստոսը կարո՞ղ էր իր Պատմության մեջ գրել լսողներին այնքան անհաճո բաներ: Այս չի կարող լինել: Ուստի ես այս բանը անհավատալի համարելով՝ իմ կարճ խելքով, կարծում եմ, թե մի այլ հանդուգն և անկիրթ մարդ լրբաբար ձեռք է խառնել նրա գրածի մեջ և իր գլխից գրել է ինչ որ կամեցել է: Կամ գուցե մեկը, չկարողանալով ավելի պատշաճ բան գրել, այլևայլ բաներ գրեց և Փավստոսի անունով կամեցավ ծածկել իր հանդգնության սխալները, և այս բանը պարզ երևում է ամեն մի քննողի, որովհետև հույների, մանավանդ ասորիների մեջ շատերը կան, որ այսպիսի լրբություն են գործել: Տգետ և հանդուգն մարդիկ իրենց գլխից գրել են անպիտան և դատարկ բաներ ու խառնել գիտնականների գրքերի մեջ»: Ինչպես հետո կտեսնենք, Փարպեցու այս սուր դիտողությունը փոքր բարեփոխությամբ միանգամայն հիմնավոր է:

Փարպեցու այս աննպաստ գնահատությունից ազդված կամ ինքնուրույնաբար՝ հետագա հայ պատմագիրներն ևս արհամարհանքով են վերաբերվել Փավստոսի Պատմությանը և իրենց պատմությունները գրելիս ընդհանրապես հետևել են Մ. Խորենացու, բայց ոչ Փավստոսի Պատմությանը:

Մ. Չամչյանն իր ընդարձակ Հայոց պատմության մեջ (Վենետիկ, 1781) խիստ աննպաստ կարծիք է հայտնում Փավստոսի մասին՝ նրան համարելով թշնամի Հայոց ազգի և թագավորության, ասում է, թե նա եղել է մի օտարազգի (հույն) բախտախնդիր, փառամոլ, խռովարար հոգևորական (Ե. Մ., եր. V):

Փավստոսի Պատմության առաջին գնահատողը եղավ ֆրանսիացի հայագետ Սեն Մարտենը. նա ասում է, թե Փավստոսի Պատմությունը ավելի ճիշտ գաղափար է տալիս Հայաստանի վիճակի մասին չորրորդ դարում, քան Խորենացու Պատմությունը: Նրա կարծիքով՝ Փավստոսի Պատմությունը գրված է չորրորդ դարի իննսունական թվականներին (Ե. Մ., VI, 8):

Հայկազյան բառարանի հեղինակները, հատկապես Մ. Ավգերյանը, Չամչյանի տեսակետն ունեն: Նրանք կարծում են, թե Պատմության հեղինակը հույն Փավստոս եպիսկոպոսն է, Ս. Սահակի կաթողիկոսությունից առաջ, որ գրել է հունարեն լեզվով՝ Երրորդ դպրությունից մինչև Վեցերորդը.

կոկնաբանություններով և անհեթեթություններով լի, որոնք առասպելների են նմանվում: Հեղինակը վատաբանում է հայ ազգը: Շատ հայկաբան թարգմանություն է, որ կատարել է Մեսրոպի աշակերտներից մեկը, հավանորեն Կորյունը, որ Բուզանդի խոսքերից ինչ-ինչ հատվածներ փոխ է առնում ու հարմարեցնում Ս. Մեսրոպի Վարքին: Դիտում են նաև, որ հույն պատմագիր Պրոկոպիոսը (Զ դարում) ինչ-ինչ հատվածներ վերցնում է Փավստոսից՝ կոչելով այն Պատմություն Հայոց: Ենթադրում են դարձյալ, որ այս Պատմությունն սկզբնապես ունեցել է նաև նախնական ժամանակի Հայոց պատմությունը, բայց հայերեն թարգմանված են միայն վերջի չորս դպրությունները քրիստոնեության ժամանակի մասին, որտեղ ժամանակագրությունը ավելի ստույգ է երևում:

Ղ. Ինճիճյանը կարծում է, թե Պատմության հեղինակը հայ է, Սահառունյան տոհմից[1], որ Բյուզանդիայում ուսած լինելով՝ կոչվել է Բյուզանդացի և ընդունել է Փավստոս անունը: Նա իր Պատմության համար շատ բան քաղել է Հայոց մատյաններից և դիվաններից. նա շատ պարագաներ պատմում է մանրամասնորեն, որոնք Խորենացին իր հայտնի համառոտասիրությամբ զանց է արել կամ շատ համառոտ է պատմել: Ուստի չպետք է արհամարհել այս Պատմությունը, պետք է աշխատել այս երկու հեղինակներին մոտեցնել և մերժել միայն այն, ինչ որ հայտնապես հակառակ է Խորենացու Պատմությանը: (Այս կարծիքը բերված է Զարբհանալյանի «Հայկական հին դպրության պատմության» մեջ, 1886, էջ 230—2):

Հ. Գաթըրճյանը Ղ. Փարպեցու նման նույն կարծիքին է, թե մի անծանոթ հայ իր սեփական գրվածքը զարդարել է ծանոթ հույն ժամանակագրի անունով. այս հույն ժամանակագրի անունը Փավստոս Բյուզանդ (Բյուզանդդ) է և ոչ Փավստոս Բյուզանդացի: Բուն հեղինակը հայ է, Սահառունյաց տոհմից—«բուն հայ հողէն բուսած, բոլոր հայ երկիրը թզավ և քլավ չափած, ամեն մեկ տողին մեջ իր հայրենակցաց գաղափարաց գունով սնած», որ հավաքել ու գրի է առել հայկական առակները, առասպելները, զրույցները, ազգային և ընտանեկան սովորույթները: Նա խոստանում է գրքի վերջում («Մտորոտ ամենայն պատմութեանց») իր մասին տասը տող տեղեկություն տալ, բայց այդ տասը տողից և ոչ մեկը չկա. հավանորեն Ղ. Փարպեցին էլ չի կարդացել: Այս անծանոթ հեղինակը աչքի առաջ ունեցել է մի հույն պատմագիր, հավանորեն Ամմիանոս Մարկեղիանոսին, որի հետևողությամբ գրել է մի քանի գլուխ՝ Կեսարիայի Եվսեբիոս պատրիարքի և Բարսեղի կյանքին վերաբերող ավանդություններով հանդերձ: Ուրիշ ազգերի մասին պատմված ինչ-որ տեղեկություններ նա փոխադրել է հայ մարդկանց վրա.

---

[1] *Փավստոսը (Գ. ԺԸ), թվելով այն նախարարներին, որոնք մանուկ Հուսիկին Կեսարիա տարան կաթողիկոս ձեռնադրվելու, ի միջի այլոց հիշում է. «զՄեհրոյ տոհմի ազգի իշխանն Սահառունեաց»։ Բայց շատ բանասերներ հետո նկատել են, որ «զՄեհրայ տոհմի ազգի» աղավաղություն է, փոխանակ Մեհրահագատի կամ մի այլ հատուկ անվան։*

այսպես՝ Վաղես կայսեր հետ նրա հիվանդ որդու մասին խոսողը Բարսեղն է, իսկ ըստ Փավստոսի՝ Ներսես կաթողիկոսը: Հայ անապատականների պատմություններից ընդօրինակում է Խադ սարկավագապետի գործած հրաշքները, Մամբրեի միայնանոցում կատարված հրաշալի դեպքը (Ե, 28) հեղինակն առել է ուրիշ վանական պատմությունից, շատ բան աղոթքների մեջ փոխ է առել Բարսեղի պատարագամատույցից: Իր թերություններով հանդերձ՝ բավական նյութ է մատակարարում բանասիրության կամ լեզվաբանության համար, ինչպես նաև աշխարհագրական ու պատմական ծանոթությունների համար: (Հրատարակված է «Հանդես ամսօրյա»-ում 1889, մարտ, էջ 40—43): Իր Տիեզերական պատմության մեջ Գաթըրճյանը հաճախ օգտվում է Փավստոսից:

Գ. Զարբհանալյանը «Հայկական հին դպրության պատմության» մեջ (Վենետիկ, 1865, Բ տպ. 1886) Փավստոսի Պատմության հեղինակին հույն է համարում՝ հիմնվելով հետևյալ փաստերի վրա. գրքի մեջ հիշատակվում են Փավստոս եպիսկոպոս և նրա եղբայրը՝ Առոստոմ, որոնց համար պատմիչը վկայում է, թե «էին ազգաւ հոռոմ», այս Փավստոսը, Զարբհանալյանի կարծիքով, կարող է լինել Պատմության հեղինակը. դարձյալ Երրորդ դպրության վերջին գլխից հետո տրված կարճ հիշատակարանում վկայվում է, թե Փավստոս Բուզանդ մեծ պատմագիրը հունաց ժամանակագիր էր: Սրանցից ավելի՝ Բուզանդի գիրքը ինքը հայտնում է հեղինակի ազգությունը: Այս գրքում անցքերի պատմությունը ավանդվում է բոլորովին տարբեր մյուս հայ պատմիչներից և մանավանդ Խորենացուց, և հայ հեղինակի համար անկարելի կլիներ այսպիսի անգիտություն ժամանակով մերձավոր մարդկանց և դեպքերի վերաբերմամբ: Մի կարևոր հանգամանք էլ այն է, որ հեղինակի մեջ երբեմն նկատվում է մի հնացած ատելություն դեպի հայ ազգը, որի պատճառով միշտ առիթ է փնտրում մեր ազգը պարսավելու*: Զարբհանալյանը կարծում է, որ հույն հեղինակը քաջահմուտ է եղել հայերեն լեզվին և գրել է հայերեն: Հիմնվելով Պատմության առաջաբանի վկայության վրա՝ Զարբհանալյանը գտնում է, որ Պատմությունը լրիվ է հասել մեր ձեռքը, իսկ որ Առաջին դպրությունը կոչված է Երրորդ դպրություն, նա բացատրում է նրանով, որ Առաջին և Երկրորդ դպրություն համարված են Թադեոս առաքյալի և Գր. Լուսավորչի (Լաբուբնայի և Ագաթանգեղոսի) գրվածքները:

Մ. Էմինը Փավստոսի Պատմության ֆրանսերեն թարգմանության մեջ, որ հրատարակվեց Լանգլուայի հայ պատմագիրների ժողովածուի (Collection) Ա հատորում 1867 թվականին, երկու տարբեր կարծիք է հայտնում Փավըստոսի Պատմության բնագրի մասին: Առաջին՝ նա գտնում է, որ այս Պատմությունը լրիվ է հասել մեր ձեռքը, իսկ Պատմության Երրորդ դպրությամբ սկսվելը բացատրում է նրանով, որ հեղինակը Առաջին և Երկրորդ դպրություն համարել է Ագաթանգեղոսի երկմասնյա Պատմությունը: Երկրորդ՝ նա

---

* *Փավստոսը երբեմն բացասական վերաբերմունք է ցուցաբերում առանձին անձերի ու դեպքերի նկատմամբ և այն էլ ցավով*—Խմբ.:

«Բուզանդարան պատմութիւնք» վերնագիրը հասկանում է իբրև «Պատմական մատենադարան Փ. Բուզանդի», և կարծում է, թե Բուզանդը գրած է եղել ուրիշ ազգերի պատմություններ, որոնք կազմել են նրա այժմ կորած Ա և Բ դպրությունները, հաջորդ չորս դպրությունները (Գ—Զ), որ Հայոց պատմության են վերաբերում, թարգմանված են հունարենից հայերեն հինգերորդ դարի առաջին կեսում։

Գուտշմիդը (Glaubwürdigkeit) Ագաթանգեղոսից հետո հիշում է[1] Փավստոս Բուզանդին և կոչում է նրան առաջին իսկական պատմագիր, որ չորրորդ դարում հունարեն գրել է Հայոց պատմություն, որի հայերեն թարգմանությունը պահպանվել է։ Նա ամենակարևոր աղբյուրներից մեկն է այն ժամանակի պատմության, բայց զգուշությամբ պետք է օգտագործվի նրա չափազանցությունների և մոլեռանդ կուսակցականության պատճառով, որ նա հանդես է բերում՝ իբրև հոգևորականության կողմնակից՝ թագավորության դեմ։ Բայց սրանից ավելի՝ հայ թարգմանության ծանր, կոպիտ, «ոչդասական» ոճը պատճառ եղավ, որ այս ամենահին պատմագիրը հայ գրականագետների կողմից մինչև այսօր անարդարացի կերպով արհամարհված է։

Ք. Պատկանյանը կարծում է («Ванские надписи», ըստ Ե. Մ.-ի), թե Փավստոսի Պատմությունը հայերեն է թարգմանված ասորերենից, հիմնվելով այն բանի վրա, որ Պատմության մեջ Հայաստանը կոչված է Թորգոմական աշխարհ, իսկ ըստ Կիպերտի վկայության՝ հնագույն ժամանակներում սեմական ազգերն էին այս անունով կոչում մեր աշխարհը։ «Библиографический очерк Армянской исторической литературы» աշխատության (1879) առաջաբանում նա անցողակի խոսում է և Փավստոս Բուզանդի մասին, համարում է նրան չորրորդ դարում ապրած. նա ժողովրդական պատմիչ է, պահպանել է ժողովրդական ավանդությունների արձագանքները՝ սրանց հատուկ չափազանցություններով ու պատմական սխալներով։ Երկու հիմնական պատմվածք կազմում են նրա բովանդակությունը՝ ս. Ներսեսի կենսագրությունը և Արշակ ու Պապ թագավորների վարած պատերազմները Շապուհի դեմ։ Հեղինակը այս երկու նյութերը ճարտարորեն հյուսել է իրար։ Հինգերորդ դպրության մեջ գրույցի ձևով պատմել է Արշակ թագավորի երեսնամյա պատերազմները Շապուհի հետ, որտեղ նկարագրվում են Մամիկոնյան տան սպարապետների քաջագործությունները։ Իսկ Փավստոսի Պատմության իր հրատարակության առաջաբանում նա Փավստոսին կոչում է «անհամեմատն ի պատմագիրս մեր և քան զբազումս արդարախօսն Փաւստոս»։

Ս. Մ. Գարագաշյանը («Քննական պատմություն Հայոց», 1880, Բ տպ., 1895) Բուզանդ պատմագրին համարում է ծաղկած Տրդատի անմիջական հաջորդների ժամանակակից, այսինքն՝ Խոսրով Կոտակից մինչև Հայոց թա-

[1] Ueber die Glaubwürdigkeit der Armenischen Geschichte des Moses von Khoren, Leipzig, 1876.

գավորության բաժանումը կամ մինչև Արշակ (Բ) թագավորը, որ գրել է այդ ժամանակի պատմությունը, որի մեծագույն մասին ականատես է եղել կամ ի մոտո տեղյակ: Սրանից հետևում է, որ Գարագաշյանը նրան համարում է հույն և Պատմությունը՝ հունարեն գրված, որ հետո թարգմանվել է հայերեն: Գարագաշյանը այս ժամանակի պատմությունը գրել է հետևելով Փավստոսին՝ «ինչպես Արիադնյան թելի»: Սակայն այս նախամեծարությունը, որ նա տալիս է Փավստոսին Խորենացու նկատմամբ, նրան չի արգելում անաչառ քննել այս հեղինակին ևս, «մանավանդ որ միամիտ պատմիչն մեր կթողու զինքն տանել հործանաց յուրո միտմանն ի հրաշալիս՝ և ի կուսակցություն եկեղեցական խմբի, հորմե և ինքն է» (Բ տպ., հատ. Բ, էջ 2 և 8):

Նորայր Բյուզանդացին («Քննասեր», 1887) Փավստոսի Պատմության մեջ նկատում է երկու իրար հակասող ոգի, մեկը՝ լկտի, զվարճացնող, ծիծաղեցնող, մյուսը՝ բարեպաշտական, լի աղոթքներով, հրաշքներով և այլն: Նրա կարծիքով գրքի հեղինակը հույն Փավստոս Բուզանդն է, աշխարհական, որ գրել է լկտիաբան պատմություն, ապա այս գրվածքը անցել է մի ասորի եկեղեցականի ձեռքը, որ այն համեմել է կրոնաբարեպաշտական մասերով: Փոփոխության ենթարկված ու ընդմիջարկված այս օրինակն է հասել մեր ձեռքը հայերեն թարգմանությամբ: Թարգմանիչն է Կորյունը: «Բուզանդարան պատմութիւնք» կապակցությունից Ն. Բյուզանդացին ենթադրում է, թե «նախնաբար երկու կամ երեք զանազան բյուզանդացի մատենագրաց պատմությիւններ ամփոփյալ էին ի միում տփի... և օտար ոմն հանած է այս տփեն միայն գԳ, զԴ, զԵ և զԶ դպրությունս»:

Փավստոսի Պատմության առաջին բազմակողմանի քննությունը պատկանում է Ե. Մ.-ին (Եղիշե Մառաթյան): Նա 1890 թվականին Վիեննայում տպագրեց մի գրքույկ՝ «Փավստոս Բյուզանդ» վերնագրով: Նախ նա բերում է այն փաստերը, որոնց հիման վրա բանասերները Պատմության հեղինակին համարել են հույն կամ հայ, և ցույց է տալիս, որ այդ փաստերից ոչ մեկը համոզիչ չէ: Հետո իր կողմից մի նոր մեկնություն է առաջարկում «Մտորոտ ամենայն պատմութեանց» հիշատակարանին (տ. եր. 7), այսինքն՝ «Իմ մասին հաղորդված տեղեկություններից հետո գալիս են տասը գլուխ», և որովհետև Զ դպրությունը 16 գլուխ ունի, իսկ վերջից սկսած տասը գլուխ առաջ, Ե գլխում գրված է «Փավստոս և Զորթ եպիսկոպոսների մասին», Զ գլխում էլ՝ «Փավստոս եպիսկոպոսի եղբոր՝ Առոստոմի մասին», սրանից Ե. Մ. մակաբերում է, որ Պատմության հեղինակի խոստացած տեղեկությունը իր անձի մասին պետք է փնտրել այս գլուխներում: Իսկ այստեղ Ե գլխում պատմվում է, թե Փավստոսը Ներսես կաթողիկոսի տանը ապրում էր իբրև նրա տասներկու ներքին խորհրդականներից ու գործակիցներից մեկը, իսկ հաջորդ Զ գլխում ասված է, թե Փավստոսը և նրա Առոստոմ եղբայրը «ազգաւ Հոռոմ էին»: Սրանով, Ե. Մ.-ի կարծիքով, այլևս առանց որևէ կասկածի լուծվում են հեղինակի ազգության և նրա ապրած ժամանակի կարդինալ հարցերը: Այս հույն հեղինակը՝ Փավստոսը, ժամանակակից և շատ անգամ ականատես է եղել իր պատմած անցքերին: Պատմությունը

գրել է ոչ ուշ, քան 391 թվականը, դեռ Ասպուրակես կաթողիկոսի կենդանության ժամանակ, որովհետև չի հիշում, թե նա քանի տարի է կաթողիկոսություն արել: Սրանով էլ վճռվում է Պատմության սկզբնագրի լեզվի հարցը:

Մեսրոպյան գրերից առաջ (որոնց գյուտը Ե. Մ. դնում է 406-ին) հայերեն գրականություն չի եղել. գրում էին հույն կամ ասորի տառերով. ուրեմն, այս Պատմությունը գրված է հունարեն և հայերեն է թարգմանված հինգերորդ դարում: Սրանով էլ բացատրվում է այն երևույթը, որ ս. Գրքից բերված ցիտատները համապատասխանում են ս. Գրքի հայերեն թարգմանությանը, ուրեմն, այս թարգմանությունից են վերցված (բերում է հինգ օրինակ): Նրա լեզուն ամենևին չի հիշեցնում Ե դարում թարգմանված այլ գրվածքների լեզուն: Դասական լեզվին զուգընթաց Հայաստանում զարգանում էր և ժողովրդական լեզուն, և այս ժողովրդական լեզվով է թարգմանված Փավստոսի Պատմությունը, որ ավելի բնական է, քան հինգերորդ դարի նույնիսկ ինքնուրույն հեղինակությունները: Նրա մեջ պատահում են քիչ քանակությամբ հունարեն բառեր, բայց Ե. Մ. գտնում է, որ դրանք սովորական են մեր հին գրականության մեջ:

Բնագրի ծավալի վերաբերմամբ Ե. Մ. նկատում է, թե Գ, ա գլխում «...է ինչ մեր պատմութիւն, որ՝ առաջին է»... նախադասությունը ցույց է տալիս, թե Փավստոսի Պատմությունն ունեցել է նաև նախնական ժամանակների պատմությունը մինչև Թադեոս առաքյալը և Սանատրուկը, որ մեր ձեռքը չի հասել: Պրոկոպիոսից բերում է մի հատված, թե Պարսից մի թագավոր Հայաստանի վրա թագավոր է կարգում իր եղբայր Արշակին, ինչպես գրված է Հայոց պատմության մեջ: Ե. Մ. կարծում է, թե այս տեղեկությունը գտնըվում էր Փավստոսի նախնական ժամանակի պատմության մեջ, որ այժմ չկա: Նա գտնում է, որ Դ դպրության մեջ բերի է ԺՁ գլուխը՝ Արշակի Պարսկաստանից փախչելու մասին (տե՛ս մեր ծանոթ. 102) բնագիրը պարունակում է աղավաղություններ, որոնցից ինքը ուղղում է 27 հատ: Փավստոսի Պատմության մեջ մնացել են նրա գործածած աղբյուրների հետքեր: Ե. Մ. անհարազատ հավելվածներ է համարում Դանիել եպիսկոպոսի և Ներսես Մեծի անեծքներն ու գուշակությունները, որոնք մուծվել են Պատմության մեջ հինգերորդ դարի առաջին կեսից ոչ առաջ: Մի քանի գլուխներ ակըներև կերպով ձգձգված են, ինչպես Ներսես Մեծի քարոզությունը Վաղես կայսրի առաջ, անապատ կղզում և Բագավանի ճակատամարտի ժամանակ նրա աղոթքները և այլն: Աղբյուրների մեջ, բացի ս. Գրքից, Ե. Մ.-ը հիշում է նաև Կորյունին և Ագաթանգեղոսին, որոնցից մի-մի օրինակ է բերում: Փավստոսը ուրիշ աղբյուրներից ծանոթ լինելով որևէ մի անցքի՝ այս անցքը վերագրում է հայերին: Այսպես, Վաղեսի հիվանդ որդու պատմությունը, որ վերաբերում է ս. Բարսեղին, Փավստոսը վերագրում է Ներսես Մեծին: Փեբիանոսի վրա աղավնի իջնելը վերագրում է ս. Բարսեղին և Ներսես Մեծին: Վաղեսի աքսորած եպիսկոպոսների մեջ է դնում նաև Ներսեսին: Նա շատ բան գրել է իբրև ժամանակակից և ականատես, մանավանդ

հոգևորականներին վերաբերող մասերում, բայց և շատ բան պատմում է՝ օգտըվելով անգիր ավանդություններից, և որովհետև զուրկ է քննադատության կարողությունից, ուստի առանց այլևայլության, առանց երկբայության, լրջորեն պատմում է ամենաանհավատալի առասպելներ՝ լիովին նրանց հավատ ընծայելով: Կրոնական նեղ հայացք ունենալով՝ նա շատ պատմական անցքեր բացատրում է աստծու միջամտությամբ, իբրև վարձատրություն բարեպաշտական գործերի կամ իբրև պատիժ անօրինությունների (առաջինի համար օրինակներ՝ Հուսիկը, Դանիելը, Ներսեսը, Մուշեղը, երկրորդի համար՝ Սանեսանը, Տիրանը, Պապը...): Ավանդությունների վրա հիմնված, կղերական ոգով լուսաբանված այս Պատմությունը ներկայացնում է բազմաթիվ անճշտություններ, չափազանցություններ, ժամանակագրական սխալներ (օրինակներ), ուստի «որպես Պատմություն Փավստոսի երկասիրությունը չի դիմանում լուրջ կրիտիկայի»: Բայց ունի մեծ արժեք՝ ուսումնասիրելու համար Դ դարի հայոց հավատալիքները, սովորությունները, նախարարների հարաբերությունը թագավորի իշխանության հետ, մեր եկեղեցու սկզբնական վիճակը, Հայաստանի տեղագրությունը, աշխարհագրությունը: Հենց նրա առասպելներն էլ, Խորենացու ասածի նման, «զճշմարտութիւն իրացն այլաբանաբար յինքեանըս ունին թաքուցեալ», այնպես որ հմուտ բանասերը կարող է նրա հաղորդած տեղեկություններից դուրս բերել իսկական իրողությունը: Այս տեսակետից Փավստոսը թանկագին աղբյուր է Խորենացու Պատմության երրորդ գրքի քննության համար: Լեզուն ընտիր է, բայց խառնուրդ է դասական և ռամկական ոճի, զուրկ է պարզ տրամաբանական կատարելությունից, գեղարվեստական ճաշակից: Փավստոսի նկարչական զորությունը նրա անխնա իրապաշտությունն է. ընթերցողի աչքի առջևով անցնում են մի շարք պատմական գործիչներ՝ իրենց ֆիզիկական և բարոյական կերպարանքով:

Հ. Տ.-ը (Հ. Տաշյան) Ե. Մ.-ի այս գրվածքի քննադատության մեջ («Հանդես ամսօրյա», 1890, մարտ, էջ 68—71) հերքում է Ե. Մ.-ի տված բացատրությունը Փավստոսի «Ստորոտ ամենայն պատմութեանց» հիշատակարանին. հերքում է նաև Ե. Մ.-ի նկատած հունաբանությունները և հունարեն բառերը Փավստոսի մեջ: Ինքը համարում է, որ Փավստոսի հեղինակը հայ է և գրել է հայերեն, մեծագույն ապացույց համարելով այն իրողությունը, որ Փավստոսը բառացի ճշտությամբ ցիտատներ է բերում ս. Գրքից և Բարսեղի պատարագամատույցի հայերեն թարգմանությունից: Խիստ է գտնում Ե. Մ.-ի դատաստանը Փավստոսի մասին, թե «որպես Պատմություն՝ Փավստոսի երկասիրությունը չի դիմանում լուրջ կրիտիկայի»: Ինքն իր կողմից նկատում է, թե «ո՛չ յուր (Փավստոսի) անթիվ զրույցներն ու առասպելները, ո՛չ ժամանակագրության և պատմության սխալներն և ոչ այլ թերություններ կըրնան յուր նաև պատմական նշանակությունը ոչնչացնել»: Նույն բանասերը մի ուրիշ անգամ («Հանդես ամսօրյա», 1905, «Արշակունի դրամներ», էջ 163, ծանոթ.) այլ կերպ է հասկանում Փավստոսի խոսքը՝ «...է ինչ մեր պատմութիւն, որ առաջին է» և այլն, այն մտքով, թե Բուզանդ կհայտնե, թե յուր Պատմության մեջ կան երեք կարգի ժամանակներ ալ, առաջին, միջին և

վերջին, և թեպետև միջինը գրված ալ է ուրիշներէ, «Բայց զի մի ի միջի մերոյ Պատմութեանս ընդհատ երևեցի՝ հուն մի նշանակեցաք»: «Ուստի Բուզանդա գիրքն հինքյան իսկ պակաս մ'ունենալու չէր.— իսկ եթե «կորուված» գրքերու դրությունը կընդունվի, անշուշտ, ազատ է ամեն քանասեր յուր կարծիքն ունենալ. բայց համոզիչ փաստեր՝ ներկա հանգամանաց մեջ անկարելի է բերել»:

Հ. Բ. Սարգիսյանն իր «Ագաթանգեղոս և յուր բազմադարյան գաղտնիքն» աշխատության մեջ (Վենետիկ, 1890) այն կարծիքն է հայտնում, թե Փավըստոսի Պատմության հեղինակը «պետք է որ Դ դարու վերջերը ապրող հայ մի եղած լինի (Սահառունի կամ Բյուզանդացի) և յուր գործը ոչ թե հայերեն, այլ հունարեն լեզվով շարադրած է, օգտվելով ատրի և հույն հիշատակարաններե, որուն մեջ ապա Ե դարում կամ թարգմանության և կամ մի ուրիշ առիթով անծանոթ գրչե մը այլ և այլ եկամուտ հատվածներ ներմուծված են... Նա չէր կարող Ե դարում և գլխովին հայերեն լեզվով շարադրված լինել, ապա թե ոչ՝ վերոհիշյալ հեղինակներն (Սոկրատ, Սոզոմեն և Պրոկոպիոս) ոչ կարդալ պիտի կարողանային զայն և ոչ այլ անտի հատվածս մեջ բերել, և սակայն Պրոկոպիոս ըստ հունարեն բնագրին մեջ բերած է բոլոր Արշակա պատմությունն, և ոչ թե ըստ բերանացի ավանդության կամ ըստ հայերեն գրության»: Կորյունի և Փավստոսի մեջ նկատված մի քանի կտորների նույնությունը այս բանասերը բացատրում է նրանով, որ Կորյունն օգտվել է Բուզանդի Պատմության հայերեն թարգմանությունից:

Ն. Մառը («О начальной истории Армении Анонима», «Визант. Временник», 1894) այն կարծիքն է հայտնում, թե Փավստոսի Պատմությունը, որ սկսվում է Երրորդ դպրությունից, սկզբնապես ունեցել է նաև Առաջին և Երկրորդ դպրությունները. սրանք այն երկու դպրություններն են, որ ընկած են այժմ Սեբեոսի Պատմության սկզբին (ըստ Ք. Պատկանյանի հրատարակության) դպրություն Առաջին, դպրություն Երկրորդ անունով[1]:

Փավստոսի Պատմության հեղինակին նա, ըստ երևույթին, համարում է հայ. բացարձակ մերժում է Փավստոսի «Ստորոտ ամենայն պատմութեանց» հիշատակարանի Ե. Մ.-ի բացատրությունը, ըստ որում հեղինակը հոռոմ Փավըստոս եպիսկոպոսն է, որ հիշվում է Պատմության Զ դպրության Ե գլխում: Մեզ հայտնի չէ, թե ի՛նչ կարծիք ուներ Ն. Մառը Փավստոսի Պատմության վերաբերյալ ուրիշ հարցերի նկատմամբ:

«Հանդես ամսօրյա»-ում (1896, №№ 1, 2, 3) տպագրվեց իմ «Ուսումնասիրություն Փավստոս Բուզանդի» հոդվածը, որի մեջ աշխատել եմ ցույց տալ, թե Փավստոսի Պատմության հեղինակը հայ է, դպրոցական ուսում չստացած, բուն հայասեր, որ գրել է Ե դարի երկրորդ կեսում հայերեն՝ օգտվելով ժողովրդական ավանդություններից, որոնք երեք գլխավոր շարքից

1 *Այս հարցի մասին տե՛ս մանրամասն մեր՝ Սեբեոսի հրատարակության առաջաբանը։*

են բաղկացած՝ արքունական տան՝ կենտրոնական տեղում ունենալով Արշակ թագավորին, եկեղեցական ոլորտի՝ կենտրոնական տեղում ունենալով Ներսես Մեծին, և Մամիկոնյան տան՝ իր Վասակ, Մուշեղ, Մանուել հերոսներով: Անհայտ հայ հեղինակը վերցրել է գրքի մեջ հիշատակված Փավստոս հույն եպիսկոպոսի անունը, որպեսզի դրանով ավելի վստահություն ներշնչի ընթերցողներին: (Մանրամասնությունները ու ապացույցները այստեղ չենք բերում՝ կրկնությունից խուսափելով, որովհետև քիչ հետո նույն հարցերը նույն տեսակետով մանրամասն պիտի շոշափենք):

Ժ. Մարկվարտը («Untersuchungen... S. Zur Kritik des Faustus von Byzanz», «Philologus», հայերեն թարգմանությունը՝ «Հանդ. ամսօրյա», 1897, էջ 5—9, 183—186. 1898, էջ 320—326) գրել է քննադատություն Փավստոսի Պատմության բովանդակության, նրա հաղորդած պատմական փաստերը, անձերի անունները և ժամանակագրական տեղեկությունները համեմատելով հույն հեղինակների տեղեկությունների հետ: Կարևոր աղբյուր է Փավստոսի երկի բովանդակության քննության, ինչպես և պատմական անցքերը ճշտիվ որոշելու համար:

«Հանդես ամսօրյա»-ում 1898-ին տպագրվեց և ապա արտատպվեց այնտեղից Հ. Դաղբաշյանի քննությունը՝ «Փ. Բյուզանդացի և յուր Պատմության խարդախողը» վերնագրով: Հեղինակը նկատում է, որ Փավստոս Բուզանդացու և Մովսես Խորենացու Պատմությունների մեջ «մի կողմից՝ քառացի ակնհայտնի նմանություններ կան, իսկ մյուս կողմից՝ հսկայական տարբերություններ, անհամաձայնություններ ու հակասություններ: Պետք է փորձել այս երկու տոհմային պատմագիրներին միմյանց հետ համեմատելով նոցա մեջ եղած առնչությունը հաստատելու և բացատրելու նոցա մեջ գոյություն ունեցող հակասությանց պատճառները»: Իր քննության մեջ հեղինակը կատարում է այս համեմատությունը Փավստոսի և Խորենացու ավանդածների՝ սկսած Խոսրով Կոտակից ու Վրթանեսից մինչև Պապը և ս. Ներսեսի հաջորդները, այսինքն՝ ամբողջ Փավստոսը Խորենացու Պատմության Գ գրքի բ—խբ գլուխների հետ: Իբրև ընդհանուր գիծ՝ այս քննության մեջ արտահայտվում է այն հայացքը, թե Փավստոսի պատմածները ճշմարիտ են, իսկ Խորենացին, որտեղ որ նրանից տարբեր է ավանդում, խարդախում է նրա Պատմությունը, և ինքը՝ հեղինակը, աշխատում է ցույց տալ, թե ինչի՛ց դրդրված Խորենացին այլափոխել է Փավստոսի պատմածները: Հեղինակը կատաղի թշնամի է Խորենացուն, նրա տված բացատրությունները հաճախ անհիմն ու ծիծաղաշարժ են, չափազանց անվայել, փողոցային հայհոյանքներ է թափում Խորենացու վրա:

Գր. Տեր-Պողոսյանը «Հանդես ամսօրյա»-ում (1900 թ.) մի ուսումնասիրության մեջ՝ «Նկատողություններ Փավստոսի Պատմության վերաբերյալ» վերնագրով աշխատում է ցույց տալ, թե այս Պատմության Զ դպրությունը, առաջին գլխից սկսած մինչև վերջինը, Պատմության բուն հեղինակի գրածը չէ, այլ մի օտար գրչի անհարազատ հավելված: Փավստոսին վերաբերող մյուս հարցերի մասին հեղինակը խոստանում է խոսել իր աշխատության

երկրորդ և երրորդ մասերում, բայց որքան մեզ հայտնի է՝ սրանք լույս չեն տեսել:

Ղ. Ալիշանը («Հայապատում» ,Վենետիկ, 1901) Պատմության հեղինակին համարում է հունահայ, այսինքն Հայաստանի հունական բաժնում ծնված բնիկ հայոց ծնունդ, որ երկար ժամանակ, գուցե մանկությունից ի վեր, ապրած ու վարժված է Բյուզանդիոնում: Պրոկոպիոսը նրա Պատմությունից է առել Արշակ Բ-ի՝ Անհուշ բերդն աքսորվելու և մեռնելու պատմությունը, և սրանից Ղ. Ալիշանը հետևցնում է իբրև անտարակուսելի ապացույց, թե Փավստոսի Պատմությունը գրված է եղել հունարեն, պատմած անցքերին ժամանակակից և ականատես անձի կողմից, մոտ մի դար հետո թարգմանվել է հայերեն: Հեղինակին նա համարում է աշխարհական մարդ: Պատմության մեջ նկատվող կրկնաբանությունները և ճոխությունը Ղ. Ալիշանը ավելի վերագրում է թարգմանչին, քան հեղինակին: Քանի որ Պատմությունն սկսվում է Գ դպրությամբ, սրանից ենթադրվում է Ա և Բ դպրությունների գոյությունը: Այս մասին որոշակի կարծիք չունի Ղ. Ալիշանը: Նա համարում է, որ այս դպրությունները կա՛մ կորած են, կա՛մ նրանց տակ հասկացվում է Ագաթանգեղոսի գրածը, կամ մի ուրիշ պատճառ:

Ն. Ադոնցը («Начальная история Армении у Себеоса», «Визант. Временник», 1901, т. VIII, №№ 1, 2), խոսելով Սեբեոսի, Մար-Աբաս Մծուրնացու և Մ. Խորենացու Պատմության փոխհարաբերության մասին, շոշափում է նաև Փավստոս Բյուզանդացու հարցը. նրա կարծիքով՝ Փավստոսի Պատմությունը նախ գրված է եղել հունարեն, չորրորդ դարի վերջերին կամ հինգերորդի սկզբներին, մեսրոպյան այբուբենի հնարումից առաջ, և հինգերորդ դարում թարգմանվել է հայերեն: Նա պարունակելիս է եղել վեց դպրություն՝ Ա—Զ, որոնցից առաջինը բովանդակել է հայոց նախնական ժամանակի պատմությունը (Մար-Աբաս Մծուրնացի փիլիսոփայից). Երկրորդ դպրությունը՝ Թադեոս առաքյալի քարոզությունը, իսկ Գ—Զ դպրությունները՝ Խոսրով Կոտակից այս կողմ, ինչ որ հասել է մեզ: Ադոնցի կարծիքով՝ Պատմության հայ թարգմանիչը բաց է թողել առաջին երկու դպրությունները, առաջինը՝ որովհետև հեթանոսական ժամանակի պատմություններ են, որոնք նորահայաց կրոնավոր թարգմանչի համար անհանդուրժելի էին, երկրորդը՝ որովհետև առանձին գրքով գոյություն ուներ, այնպես որ նա թարգմանել է միայն Գ—Զ դպրությունները, և Ղազար Փարպեցին այս հայերեն թարգմանությամբ է ծանոթ Փավստոսին, ուստի և նրա այժմյան Գ դպրությունը ճանաչում է ինչպես Առաջին դպրություն: Պրոկոպիոս պատմիչը ծանոթ է եղել Փավստոսի Պատմությանը, որը կոչում է Հայոց պատմություն և նրանից քաղվածքներ է անում: Խորենացին էլ ծանոթ է Փավստոսի լիակատար Պատմությանը (Ա—Զ դպրություն), և ինչպես որ նրա Գ գիրքը համառոտությունն է Փավստոսի Գ—Զ դպրությունների, այնպես էլ, հավանորեն, նրա Ա և Բ գրքերը համառոտությունն են Փավստոսի այժմ կորած Ա և Բ դպրությունների՝ լրացված ուրիշ աղբյուրներով: Փավստոսը

գրավոր աղբյուր չի ունեցել. գրել է ժողովրդի կենդանի ավանդությունների և զրույցների հիման վրա:

Ա. Մատիկյանը («Անանունը կամ կեղծ Սեբեոս» գրվածքում, Վիեննա, 1913), հիմնվելով Փավստոսի «...է ինչ մեր պատմութիւն, որ առաջին է» և այլն նախադասության վրա, հաստատապես պնդում է, թե Փավստոսը սկզբնապես ունեցել է նաև Ա և Բ դպրությունները, որոնց մեջ պատմած է եղել Հայաստանի անցքերը ջրհեղեղից մինչև Սանատրուկ թագավորը: Այս կորած մասից մի փոքր բեկոր պահպանված է Սեբեոսի Անանունի գրվածքում (Հայկից մինչև Տամիրամ և Արա Գեղեցիկ): Եվ որովհետև Անանունը այս բեկորը քաղում է Մար-Աբաս Մծուրնացու գրքից, որ Խորենացու Մար-Աբաս Կատինայի աղբյուրն է, դրանից եզրակացնում է, թե Խորենացու Մար-Աբաս Կատինան Փավստոսն է: Խորենացին Փավստոսի առաջին երկու գրքերից (որոնք համապատասխանում են նրա Պատմության Ա և Բ գրքերին) օգտվել է այնպես, ինչպես Փավստոսի այժմ գոյություն ունեցող գրքից՝ իր Գ գրքում, մի կողմից՝ սարկորեն հետևելով և մյուս կողմից՝ աղավաղելով կամ խարդախելով: Որ Փավստոսի Ա Պատմությունը սկսվելիս է եղել ջրհեղեղից «գեթ այս մասին, հեղինակի ասելով, հայոնի ակնարկություններ ունենք»: (Բայց ոչ մեկը այդ հայտնի (?) ակնարկություններից չի բերում: Անանուն—Փավստոս—Խորենացի աղերսի նկատմամբ նա ընդհանրապես նույն հայացքն ունի, ինչ որ Աղոնցը[1]:

Ահա՛ այն կարծիքները, որ, որչափ մենք գիտենք, հայտնել են բանասերները Փավստոսի Պատմության և նրա հեղինակի մասին: Որքան և բազմաթիվ ու բազմազան են այս կարծիքները, բայց երկու գլխավոր հարցերի շուրջն են պտտվում. 1. Ո՞վ է այս Պատմության հեղինակը, որի հետ բնականորեն կապված է գրության ժամանակի և բնագրի լեզվի հարցը, 2. լրի՞վ է հասել այս Պատմությունը մեր ձեռքը, թե սկզբից պակասում է երկու դպրություն: Նախքան այս հարցերի մասին վերև բերված կարծիքները քննելը հարկավոր է մի քանի խոսք ասել Փավստոսի Պատմության խմբագրության մասին:

Հինգերորդ դարի մեր պատմական հիշատակարանները բոլորը ենթարկված են խմբագրության: Կորյունից երկու խմբագրություն կա, որոնք երկուսն էլ տպագրված են: Եղիշեն ունի շատ խմբագրություններ, որոնցից միայն մեկն է տպագրված (Անձևացյաց օրինակն էլ այս խմբագրության մեջ հաշ-

[1] Այս աշխատանքը գրվելուց հետո, 1945 թվականին լույս տեսավ ակադեմիկոս Մ. Աբեղյանի «Հայոց հին գրականության պատմության» առաջին հատորը: Փավստոսի Պատմության մասին խոսելիս՝ նա համառոտ հիշատակում է զանազան կարծիքները, որ հայտնված են այս գրքի հեղինակի և նրա գրվածքի մասին, և վերջը իբրև առավել մեջ է բերում այն հայացքները, որ մենք հայտնել ենք մեր «Փավստոս Բուզանդի Պատմության ուսումնասիրության» մեջ, ծանոթության մեջ երկու անգամ հիշատակելով այս ուսումնասիրությունն իբրև աղբյուր (էջ. 169—170):

վելով): Ագաթանգեղոսի սկզբնական բնագիրը կորած է. մեր ունեցածը նրա մի խմբագրությունն է, մի ուրիշ խմբագրությունից ծագել է արաբական թարգմանությունը: Խորենացին նույնպես ենթարկված է եղել մի քանի անգամ խմբագրության, որոնց ժամանակ մուծվել են նրա մեջ հավելվածներ ուշ ժամանակի հեղինակներից կամ դուրս են գցվել ամբողջ գլուխներ: Փարպեցին նույնպես ենթարկված է խմբագրության, այլապես անբացատրելի կմնան ս. Սահակի տեսիլն ու նրա մեկնությունը:

Բացառություն չի կազմում և Փավստոսի Պատմությունը, որ նույնպես կրում է խմբագրության հետքեր: Այսպես, տեսնում ենք, որ

1. Գիրքն ունի երկու առաջաբան, մեկը կոչվում է Խոստաբանություն, որ գրել է խմբագիրը, մյուսն ունի վերնագիր՝ Գլուխ առաջին, որ գրել է գրքի հեղինակը:

2. Խմբագիրը յուր մասին եզակի թվով է խոսում՝ «ընկալեցի», «պատսպաստեցի», «ամելոցս եմ», մինչդեռ հեղինակը յուր մասին խոսում է հոգնակի թվով՝ «մեզ», «ի մերում», «եդաք», «թողաք», «մեր պատմութիւնն», «նշանակեցաք»:

3. Խմբագիրը նշանակում է յուր կատարած աշխատանքը՝ գլուխների վերնագրեր գրելը, դպրությունների առաջ ցանկեր (=Խոստաբանություն) դնելը, գլխակարգությունը, մինչդեռ հեղինակը ցույց է տալիս գրքի ծավալը, իբրև շարունակություն Ագաթանգեղոսի Պատմության:

4. Երրորդ դպրության վերջում ընկատողությունը՝ «կատարեցաւ երրորդ դպրք»... պատկանում է խմբագրին, որովհետև հեղինակը չէր կարող ասել յուր մասին, «որ էր ժամանակագիր Յունաց», չէր կարող իրեն կոչել «մեծ պատմագիր»:

5. Նույնպես խմբագրին է պատկանում «Ստորոտ ամենայն պատմութեանց...», որովհետև հեղինակը, որ ծպտված է Փավստոս Բուզանդ կեղծանվան տակ, չէր կարող իր մասին տեղեկություն տալ, որով իր կեղծիքը կբացվեր:

## Ա ԵՎ Բ ԴՊՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՂԵ՞Լ ԵՆ, ԹԵ ՈՉ

Նախ քննենք այս երկրորդ հարցը: Այս հարցի լուծումը դժվարանում է նրանով, որ Պատմությունը սրա վերաբերյալ երկու իրար հակասող տեղեկություն է պարունակում: Առաջին տեղեկությունը գտնում ենք Խոստաբանության մեջ. «Այս ինչ է ի դպրութիւնս երրորդ՝ պատմութեանցս—ժամանակագիր կանոնք մատենից և առ նմին դպրութիւնք երեք. այս ինքն են սոքա չորք մատեանք, և չորեքին միոյ իրաց յիշատակարանք են...»: Մի քիչ ներքև բերում է այս չորս մատյանների ծավալը. «...ժամանակագիր արարեալ ի թագաւորութենէն Խոսրովու որդւոյ Տրդատայ մինչև ի միւս վերջին ժամանակն կատարելոյ թագաւորացն Հայոց, և ի քահանայապետութենէն Վրթանայ որդւոյ Գրիգորի առաջնոյ քահանայապետի մինչև յայնոսիկ ի վերջինսն որք կային գլխաւորք եպիսկոպոսք Հայոց»: Այստեղ շատ որոշակի ասված է, որ այս Պատմությունն սկսվում է Երրորդ դպրությամբ և

նրան կից կան էլի երեք դպրություն և միասին կազմում են չորս դպրություն, և թե այս չորս դպրությունները պարունակում են հայոց պատմությունը՝ Խոսրովից և Վրթանեսից սկսած մինչև Հայոց թագավորների ոչնչանալը և գլխավոր եպիսկոպոսները, այսինքն՝ ճիշտ այն, ինչ գտնում ենք մեր ձեռքը հասած Պատմության մեջ։ Եվ ամեն կասկած փարատելու համար Երրորդ դպրության վերնագրում դրված է «Ըսկիզբն» (ուղղական հոլով), իսկ Վեցերորդ դպրության վերնագրում դրված է «Վերջ», այսինքն՝ որ Փավստոսի Պատմությունը սկսվում է Երրորդ դպրությամբ և վերջանում է Վեցերորդով։

Խոստաբանության այս տեղեկությունը հաստատվում է նաև Ղ. Փարպեցու վկայությամբ, որ իբրև առաջին պատմական գիրք հիշելով Ագաթանգեղոսի հայոց դարձի պատմությունը Գրիգոր Լուսավորչի ձեռքով՝ հայտնում է, թե երկրորդ գիրքը գրել է ոմն Փավստոս Բյուզանդացի, շարունակելով առաջին (Ագաթանգեղոսի) գիրքը և հասցնելով մինչև Արշակունյաց թագավորության երկու մասի բաժանվելը. ճիշտ այնպես, ինչպես որ ունի Խոստաբանությունը և ինչպես իրոք կա մեր ձեռքը հասած Պատմության մեջ։ Այս երկու անկասկածելի վկայության հիման վրա պետք է եզրակացնենք, թե Փավստոսի Պատմությունը մեր ձեռքը հասել է ամբողջապես։

Բայց ինչո՞ւ այս Պատմությունն սկսվում է Երրորդ դպրությամբ և ոչ Առաջինով, ինչպես սպասելի էր։ Այս հանելուկը բացատրելու միջոց է տալիս դարձյալ Ղ. Փարպեցին։ Հիշելով, որ Ներսես Մեծը անիծեց Արշակ թագավորին անմեղ Գնելի արյունը թափելու պատճառով, մեջ է բերում այդ անեծքը, որը բառացի նման է Փավստոսի երկում եղածին... «Եղիցես դու հեղեալ յերկիր իբրև զջուր լուալեաց, և ի լարել աղեղան բարձրելոյն տկարասջիր. և կործանումն որ բերանով մարգարէին ասացաւ, հասցէ ի վերայ ձեր—ըմպել ազգիդ Արշակունեաց զյետին բաժակն. արքջիք, արբեսջիք և կործանեսջիք և այլ մի՛ հաստատեսջիք» (Գլ. ԺԷ)։ Ղ. Փարպեցին ասում է, թե այս անեծքը գրված է «Ի Պատմութեան Երկրորդումն ի ճառին հնգետասաներորդի», այսինքն՝ Երկրորդ դպրության տասնհինգերորդ գլխում[1]։ Սակայն Փավստոսի երկում այս անեծքը գտնվում է Չորրորդ դպրության տասնհինգերորդ գլխում։ Ուրեմն, մեր այժմյան Չորրորդ դպրությունը Ղ. Փարպեցու օրինակում եղել է Երկրորդ դպրություն, որից հետևում է, որ մեր այժմյան Երրորդ դպրությունը Ղազարի օրինակում կոչվելիս է եղել Առաջին դպրություն, որ միանգամայն արդարանում է Գ դպրության վեր-

---

*1 Մ. Աբեղյանը «Հայոց հին գրականության պատմության» մեջ (եր. 589) աշխատում է հերքել իմ այս բացատրությունը, որ ես Փարպեցու «պատմութիւն» բառը հասկացել եմ Փավստոսի «դպրութիւն» բառի նշանակությամբ։ Նա կարծում է, թե Փարպեցու «պատմութիւն» բառով պետք է հասկանալ Փավստոսի ամբողջ Պատմությունը, ամբողջ գիրքը, իսկ դպրության հիշատակությունը, որ պակասում է Փարպեցու մոտ, կա՛մ Փարպեցին է մոռացել նշանակել, կա՛մ դուրս է ընկել, կորել է։*

նագրում գրված «Իսկիզբն» բառով[1]։ Ղ. Փարպեցու այս հատվածը օգնում է բացատրելու Փավստոսի Պատմության «Երրորդ դպրութիւն» նշումը փոխանակ Առաջին դպրության։ Բացի սրանից, ինչպես բանասիրությունը ենթադրում է, այդ անհայտ խմբագիրը կազմելիս է եղել հայոց պատմագիրք. այսինքն՝ պատմական գրվածքների ժողովածու, որպիսիները շատ ունենք մեր ձեռագրերում։ Ամեն մի պատմական գրվածք նա կնքել է «Դպրութիւն» անունով։ Առաջին դպրությունը այս ժողովածուի մեջ եղել է, հավանորեն, վկայաբանություն ս. Թադեոս առաքյալի, Երկրորդ դպրությունը եղել է հայոց դարձի պատմությունը, որ Ղ. Փարպեցին կոչում է «Գիրք Գրիգորիսի»։ Նրան հաջորդող Պատմությունն եղել է Փավստոսինը, որի վրա դրել է հերթական թվահամարը՝ «Դպրութիւն երրորդ», ավելացնելով «Իսկիզբն», որպեսզի ընթերցողները տարակուսանքի մեջ չընկնեն, կարծելով, թե այս Պատմությունը սկզբից թերի է։ Բայց որովհետև Փավստոսի Պատմությունն ունեցել է չորս դպրություն՝ Առաջինից Չորրորդ, այս անհայտ խմբագիրը, իր ժողովածուի հերթականությանը հետևելով, կոչել է Երրորդ-Վեցերորդ դպրություններ՝ վերջինի վրա ավելացնելով, դարձյալ ընթերցողներին հավաստիացնելու համար, «վերջ»։ Այնուհետև գուցե դարձյալ շարունակել է ուրիշ պատմական երկեր մտցնել իր ժողովածուի մեջ՝ կոչելով Յոթերորդ, Ութերորդ... դպրություններ։

Բայց այստեղից բխում է մի կարևոր եզրակացություն. Խոստաբանությունը իր «Գ—Զ դպրություն» անուններով անծանոթ է Ղ. Փարպեցուն, որ գրել է Փավստոսի Պատմությունից 20—30 տարի հետո. Փարպեցին Փավստոսի Պատմությունը ճանաչում է Ա—Դ դպրություններով, ուրեմն, Գ—Զ դպրության անվանակոչությունը և խմբագրական այլ աշխատանքները կատարվել են Ղ. Փարպեցուց հետո՝ մի անհայտ խմբագրի ձեռքով. ուրեմն, Խոստաբանությունը բուն հեղինակին չի պատկանում։

Ամեն ինչ կարծես պարզ է և անկասկածելի։

Բայց ահա հանդես է գալիս Գ դպրության առաջին գլուխը, որ վերիվայր

---

*[1] Տեղը չէ այստեղ մանրամասն հերքել Մ. Աբեղյանի հիշյալ ենթադրությունները, այդ ուրիշ տեղ կանենք։ Այստեղ բավականանում եմ միայն նկատելով, որ Փարպեցին Փավստոսի Պատմությունը ոչ մի անգամ չի կոչում* Պատմություն Երկրորդ, *այլ միշտ կոչում է* Երկրորդ գիրք *(ինչպես Ագաթանգեղոսինը կոչում է Առաջին գիրք)։ Այնպես որ, եթե Փարպեցին կամենար Փավստոսի Պատմությունը նշանակել, նա կգրեր «չորրորդ գիրսն»։ Եթե Փարպեցու գրածում խոսքը թերի է, ապա պետք է լրացնել այսպես. «չորրորդ գիրսն ի պատմութեան երրորդումն»։ Իմ տված բացատրությունը միանգամայն ուղիղ է։*

*Դարձյալ Մ. Աբեղյանը սխալվում է՝ ենթադրելով, թե Խոստաբանության հեղինակը նույն ինքը Փավստոսն է, գրքի հեղինակը։ Խոստաբանության հեղինակը Փավստոսի երկը խմբագրողն է, ինչպես ցույց ենք տվել եր. 19-ում։*

է տապալում Խոստաքանությունից և Ղ. Փարպեցու վկայություններից դուրս բերված եզրակացությունները: Այս առաջին գլխում հեղինակը հայտնում է, թե Թաղեոս առաքյալի քարոզությունից մինչև Գրիգոր Լուսավորչի վարդապետությունն ու նրա մահը և առաքելասպան Սանատրուկ թագավորից մինչև Տրդատ թագավորի ակամա հավատալն ու մահը՝ այս ամենը ուրիշների ձեռքով գրվեցին. «Բայց և մեք,— շարունակում է հեղինակը,— ի մերում աստ եդաք փոքր ի շատէ ի կարգի պատմութեանս, ոչ զանց արարեալ թողաք կասն պատշաճ իրաց կարգին: Վասնզի է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, և է ինչ՝ որ վերջին է, իսկ որ միջին ինչ եղև, այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ: Բայց զի մի՛ ի միջի մերոյ պատմութեանս ընդհատ երևեսցի, հուն մի նշանակեցաք, զոր օրինակ աղիւս մի կարգած ի մէջ որմոյն շինուածոյ, ի կատարումն բովանդակութեանն»:

Ուրեմն, հեղինակը տարբերակում է հայոց պատմության երեք մաս, որ կոչում է առաջին, միջին և վերջին: Միջին է կոչում պատմությունը Սանատրուկից մինչև Տրդատի վախճանը, որ ուրիշներից արդեն գրված է. վերջին է կոչում Տրդատի հաջորդից՝ Խոսրովից սկսած պատմությունը, իսկ առաջին է կոչում պատմական անցքերը՝ բնականաբար մինչև Սանատրուկը: Ինքն ասում է, թե իր Պատմությունը մասամբ առաջին է (մինչև Սանատրուկ) և մասամբ վերջին (Տրդատից հետո). միջինը (Սանատրուկից մինչև Տրդատի մահը) չի գրում, որովհետև ուրիշներից գրված է արդեն, բայց միայն հիշում է այստեղ մի քանի խոսքով՝ պատմության ընթացքը չընդհատելու համար, ինչպես որ մարդ մի աղյուս դնի՝ շարվածքն ամբողջացնելու համար: Ուրեմն, այստեղ հեղինակը հայտնում է, թե իր Պատմության առաջին մասը կազմում է Սանատրուկին անմիջապես նախորդող հայոց պատմության շրջանը, որ մեր այժմյան ձեռագիր օրինակներում չկա, ուրեմն և Փավստոսի Պատմությունը սկզբից թերի է:

Ա գլուխն այնքան պարզ, բնական և ոորշակի է, որ այս եզրակացությունը անհրաժեշտորեն բխում է նրանից: Սակայն սխալ կլինեի ենթադրել, թե այս պակասող մասը կազմում էին այն երկու դպրությունները, որոնք պակասում են Փավստոսի ներկա ձեռագրերում, որովհետև Փավստոսի Պատմության սկզբնագրում այդ թերի մասը (եթե եղել է) պետք է պարունակեր հայոց պատմության սկզբնական շրջանը մինչև Սանատրուկը, այնինչ մեր ձեռքը հասած Պատմության մեջ Ա և Բ դպրությունները, որոնք հայտնի չեն եղել Ղ. Փարպեցուն և գրված են եղել «ի ձեռն այլոց», պետք է պարունակեր հայոց պատմությունը մինչև Տրդատը և Գրիգոր Լուսավորիչը, որի շարունակությունն էլ կազմում է այժմ մեր ունեցած Փավստոսը՝ Խոսրով Կոտակից և Վրթանեսից սկսած:

Ժամանակագրական կարգով ավագագույնն է Գ դպրության Ա գլուխը, որ պատկանում է հեղինակին, երկրորդ տեղը բռնում են Ղ. Փարպեցու տեղեկությունները, որոնց մեջ Փավստոսի սկզբի դպրությունը Ա դպրություն է կոչվում, երրորդ տեղը բռնում է Խոստաքանությունը, որի գրողը՝ խմբագրողը, իր ժողովածուի մեջ առաջին երկու դպրության մեջ զետեղելով Թա-

դեռ առաջյալի վկայաբանությունը և հայոց դարձը, սկզբնապես Փավըստոսի Պատմության առաջին դպրությունը կոչել է Երրորդ դպրություն՝ ըստ իր ժողովածուի: Բայց այս երկու վերջին աղբյուրների հեղինակները, այսինքն՝ Ղ. Փարպեցին և Խոստաբանության խմբագրողը, ծանոթ էին հեղինակի Առաջին գլխին և սակայն բոլորովին անտես են անում նրա բովանդակությունը, ո՛չ հիշում են նրա մեջ «Առաջին» կոչված մասը և ոչ օգտըվում նրանից:

Ինչո՞վ կարելի է բացատրել այս ակնհայտ հակասությունը մի կողմից՝ Ա գլխի և մյուս կողմից՝ Ղ. Փարպեցու և Խոստաբանության մեջ: Ներկայումս մեր ունեցած միջոցներով, որքան կարծում եմ, մենք չենք կարող հերքել կամ մեկը և կամ մյուսը և ոչ էլ հաշտեցնել դրանք միմյանց հետ: Եվ քանի որ Ղ. Փարպեցու և Խոստաբանության տեղեկություններն իրար բոլորովին համերաշխ են ու արդարանում են մեր ունեցած Փավստոսի ծավալով, ուստի այս տեղեկությունները մենք համարում ենք անկասկածելի և ստույգ: Գալով Ա գլխի տեղեկությանը, «...է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է»... երկու ենթադրություն կարող ենք անել. կա՛մ նա սխալ է, կա՛մ ստույգ: Եթե սխալ է, այսինքն՝ եթե Փավստոսի Պատմությունը ոչ մի ժամանակ չի պարունակել մի սկզբնական՝ այժմ կորած մաս, այս դեպքում պարտավոր ենք եզրակացնել, թե Ա գլուխը աղավաղված է, որ նրա մեջ ընդմիջարկություն պետք է համարել «...է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է, և ի՛նչ՝ որ վերջին է, իսկ որ միջին ինչ եղև, այն ի ձեռն այլոց գրել գրեցաւ»[1]: Եթե այս երկու տողը դուրս գցենք Ա գլխից, մնացածը գեղեցիկ կերպով կհամապատասխանի Ղ. Փարպեցու գրածին և Խոստաբանությանը: Իսկ եթե Ա գլուխը ստույգ է, նրա մեջ աղավաղություն չկա, այս դեպքում պարտավոր ենք ընդունել, որ Փավստոսը գրած է եղել հայոց պատմության մի սկզբնական մաս էլ, որ հայտնի չէ որտեղից սկսվելով՝ հասնում էր մինչև Սանատրուկ թագավորը: Այս մասը պետք է համարենք անհետ կորած դեռ հինգերորդ դարի վերջերում, քանի որ Ղ. Փարպեցին, որ գրում էր նույն դարի իննսունական թվականների վերջերին, այս մասը չգիտեր[2]:

---

1 *Այսպես էլ ենթադրել են Գ. Մենևիշյանը և* Fr. Murad-*ը։ Տե՛ս Ա. Մատիկյան, «Անանունը կամ կեղծ Սեբեոս», էջ. 16—17, ծանոթ.։*

2 *Խոստաբանության և Ա գլխի մեջ եղած այս հակասությունը թերևս կարելի լինի հաշտեցնել, եթե «պատմութիւն» բառին տանք ոչ գիրք նշանակությունը, ինչպես մինչև այժմ ընդունվում է, այլ «պատմվածք, զրույց» նշանակությունը, ինչպես շարունակ գործ է ածվում Փավստոսի երկում։ Այս դեպքում Ա գլխի հատվածը «է ինչ մեր պատմութիւն՝ որ առաջին է» են., կարելի է հասկանալ այս մտքով, թե մենք այնպիսի պատմություն ունենք, որ առաջին է, և այնպիսի, որ վերջին է, իսկ միջին պատմությունները գրված են ուրիշների ձեռքով, այսինքն՝ մեր գրած պատմությունների մեջ կան, որ վերջին ժամանակներին են վերաբերում, կան որ առաջին անգամ են գրվում, իսկ միջին բաները գրվել են ուրիշների ձեռքով։ Այս մտքով՝ առաջին պատմությունները հիրավի կան Փավստոսի գրքում. օրինակ՝ Գ*

Ամփոփելով մինչև այստեղ ասածներս՝ մենք գալիս ենք այն եզրակացության, որ մեր ձեռքը հասած Փավստոսի Պատմությունը նույն ծավալն ունի, ինչ որ ունեցել է հինգերորդ դարի վերջերին, այսինքն՝ գրվելուց մոտ 20—30 տարի հետո, ուրեմն, ամենայն հավանականությամբ, լրիվ է։ Իսկ թե նա ունեցել է և մի սկզբնական մաս, որ դեռ վաղ ժամանակներում անհետացել է որևէ պատճառով, այս դեռ ենթադրական է։ Գուցե նոր լավագույն ձեռագրերի երևան գալով կամ բանասիրական խորամուխ հետազոտություններով այս հարցը վերջնականապես լուծվի դրական կամ բացասական կերպով։ Բայց մինչև այժմ եղած փաստարկումները հօգուտ այս սկզբնական մասի գոյության և նրա ենթադրական բովանդակության, համոզիչ չեն[1]։

Դառնանք առաջին հարցին՝ հեղինակի ազգությանը։ Այս հարցի նկատմամբ բանասերների մեծ մասը (Չամչյան, Սեն Մարտեն, Հայկազյան բառարան, Էմին, Գուտշմիդ, Գարագաշյան, Նորայր, Ե. Մ., Ադոնց) այն կարծիքի է, թե Պատմության հեղինակը հույն է. Պատմության մեջ հիշված Փավստոս եպիսկոպոսը, որ գրել է հունարեն Դ դարի վերջերում, իսկ մեր ունեցած հայերեն բնագիրը թարգմանություն է՝ Ե դարի կեսերին։ Բանասերների մի ուրիշ մաս (Ինճիճյան, Գաթրճյան, Տաշյան, Գելցեր և Լաուեր, ինչպես և մենք) հեղինակին համարում է հայ, որ գրել է հայերեն Ե դարի կեսերին։ Առանձին կարծիք ունի այս մասին Ք. Պատկանյանը, որ կարծում է, թե Պատմությունը թարգմանված է ասորերենից. մասամբ սրան նման է և Նորայրը, որ գտնում է, թե հույն հեղինակի բնագրում մատ է խառնել մի ասորի եկեղեցական։ Զարբհանալյանը կարծում է, թե հեղինակը հույն է

---

*դպրության մեջ Գլ. Ժ, Դ դպրության մեջ՝ Գլ. Ը, Թ, Ժ, Ի և Զ դպրության մեծ մասը։*

*[1] Այսպես, Ն. Մառի կարծիքը, թե կորած Ա և Բ դպրությունները Սեբեոսի մոտ պահված Ա և Բ դպրություններն են Անանուն հեղինակի, հերքվում է նրանով, որ Սեբեոսի մոտ չեն եղել այսպիսի դպրություններ. «Դպրություն» բառն առեղծել է Սեբեոսի Պատմության առաջին հրատարակիչ Միհրդատյանը։ Մառի, Ադոնցի և Մալխասյանի կարծիքը, Սեբեոսի մոտ պահված Մար-Աբաս Մծուրնացին իբրև աղբյուր է ծառայել Խորենացու Առաջին և Երկրորդ գրքերին, հերքվում է նրանով, որ, ընդհակառակն, Մար-Աբաս Մծուրնացին է օգտվել Մ. Խորենացու Պատմությունից (տե՛ս Սեբեոսի վերջին հրատարակության ծանոթ. 8 և 9)։ Ադոնցի կարծիքը, թե Ա և Բ դպրությունները դուրս է գցել Փավստոսի թարգմանիչը, հերքվում է նրանով, որ Փավստոսի Պատմությունը ինքնուրույն հայերեն գրվածք է և ոչ թե թարգմանություն, և այդ ենթադրված Ա և Բ դպրությունները չէին կարող դուրս գցվել մեկ այն պատճառով, որ Փավստոսը չի գրել Հայոց դարձի պատմությունը, որ «ի ձեռն այլոց» գրված է եղել, և մեկ էլ այն պատճառով, որ Փավստոսի նման բարեպաշտ հեղինակը չէր կարող այնպիսի հեթանոսական անպատշաճ բաներ գրել, որ հարկ զգացվեր դրանք դուրս գցել։*

եղել, բայց գրել է հայերեն: Ընդհակառակն, Բ. Սարգիսյանը և Ղ. Ալիշանը կարծում են, թե հեղինակը հայ է եղել, բայց գրել է հունարեն: Ղ. Փարպեցու գրածից չի հասկացվում, թե նա ի՛նչ ազգից է համարում հեղինակին, որովհետև «Բիւզանդացւոյ ուսելոյ» կապակցությունը կարելի է հասկանալ թե՛ ուսյալ բյուզանդացի (ուրեմն՝ հույն) և թե՛ Բյուզանդիայում ուսած (հայ):

## ՓԱՍՏԱՐԿՈՒՄՆԵՐ ՀՕԳՈՒՏ ՀԵՂԻՆԱԿԻ ՀՈՒՅՆ ԼԻՆԵԼՈՒՆ ԵՎ ՆՐԱՆՑ ՔՆՆՈՒԹՅՈՒՆԸ

Հեղինակին հույն համարող բանասերները բերում են մի քանի փաստարկումներ, որոնք՝ միասին վերցրած՝ կարող են հիրավի ապացույց թվալ այդ կարծիքի ճշմարտության: Բայց մանրամասն քննությունը ցույց է տալիս, որ դրանցից ոչ մեկը և ոչ բոլորը միասին վճռական ու աններկբայելի ապացույցներ չեն հեղինակի հույն լինելուն: Քննենք այդ փաստարկումները.

1. Երրորդ դպրության ցանկի վերջում գրված է. «Կատարեցաւ երրորդ դարբ... ժամանակագիր կանոնք Փաւստեայ Բիւզանդեայ ժամանակագիր մեծ պատմագրի, որ էր ժամանակագիր Յունաց»: Միանգամայն պարզ է, որ այս խոսքերը հեղինակի գրածը չեն: Ոչ մի օրինակ ուրիշ տեղ չի տեսնվել, որ մի հեղինակ ինքն իրեն կոչեր մեծ պատմագիր: Այդ խոսքերը ուրեմն գրել է մի անհայտ անձ, հավանորեն խմբագրողը՝ գրվածքի հարգը բարձրացնելու նպատակով: Անհայտ հեղինակի հիշյալ դիտավորությամբ գրած տողերը զուրկ են արժեքից իբրև ապացույց:

2. Վեցերորդ դպրության ցանկի վերջում կա հիշատակարան՝ «Ստորոտ ամենայն պատմութեանց յաղագս իմ տեղեկութեան, որ միանգամ զմատեանս ընթեռնոյք՝ տունք տասն համարական թուօք»: Ե. Մ. այս նախադասությունները հասկանում է այսպես. «Իմ մասին տեղեկություններ բովանդակող բոլոր գլուխներից հետո ընթերցողներդ կգտնեք թվով տասը գլուխ». Գարագաշյանը այսպես է կարդում (ուղղում). «Ստորոտ (վերջ) բովանդակ պատմութեանս: Յաղագս իմ տեղեկութիւն, որոց ընթեռնուն զմատեանս՝ և այլ ևս տասն գլուխք»: Բայց Ե. Մ.-ի պես հասկանալ այդ հատվածը չի կարելի, ո՛չ բառերը և ոչ քերականությունը թույլ չեն տալիս: Հեղինակը, ոսկեդինիկ լեզվով գրող հայկաբան, չէր կարող գործածել «ստորոտ»՝ փոխանակ «յետ» կամ «զկնի» գրելու, չէր կարող գործածել «տունք»՝ փոխանակ «գլուխ» կամ «պատմութեանց դպրութիւն», չէր կարող «ամենայն պատմութիւնք վասն իմ տեղեկութեան» մեծադղորդ արտահայտությունը գործածել երկու կցկտուր տեղեկությունների մասին, թե Փավստոս եպիսկոպոսը Ներսես կաթողիկոսի ներքին խորհրդական եպիսկոպոսներից մեկն էր, և թե ինքն ու իր եղբայր Առոստոմը հռոմ էին: Գարագաշյանի ուղղումն էլ կամայական է, և ինքն էլ խոստովանում է, թե այս մեկնությունը կարող է բռնի համարվել (ՔՆՆ. պատմ., Բ, 68): Բացի սրանցից, եթե հիշյալ երկու բանասերների բացատրությունն ընդունենք, դուրս կգար այնպիսի մի անպատե-

հություն, որ հեղինակը (Փավստոս) իր և Զորթ եպիսկոպոսի մասին վկայում է, թե «կամս Խոսրովու և Արշակայ, երկուց թագաւորացն բաժանաւորացն, մինչ դեռ ևս կային նոքա կենդանիք», այսինքն՝ հեղինակն իր մասին ասելիս կլիներ. «Խոսրով և Արշակ թագավորների ժամանակ ես դեռ կենդանի էի»։ Ն. Մ.-ի և Գարագաշյանի տված մեկնությունը «Ստորոտ»-ին՝ մերժվեց քննասերների կողմից։ «Ստորոտ»-ի բուն նշանակությունն է՝ «Վերջ բոլոր պատմությունների։ Ինձ վերաբերող տեղեկության տասը թվահամարված տուն ընթերցողների համար», այսինքն՝ հեղինակը (կամ խմբագրողը) խոստանում է գրքի վերջում դնել տասը տուն (ոտանավոր)՝ իր մասին տեղեկություններ պարունակող, բայց այդ տասը տունը չկա այժմյան ձեռագրերում, կորել է։ Այսպես էլ հասկանում են քննասերները այս «Ստորոտ»-ը։

3 Մեծ կարևորություն են տալիս այն հանգամանքին, որ Զ դարի հույն հեղինակ Պրոկոպիոսը Փավստոսին բավական նման պատմում է Արշակ Բ-ի վերջին արկածները—Հայաստանի հողով ու ջրով հմայությունը, Անհուշ բերդը աքսորվելը, այնտեղ մի օր թագավորավայել կյանք վարելը (Դրաստամատի շնորհիվ) և անձնասպանությունը գործելը, և գրում է, որ այս բաները գրված են «Հայոց պատմության» մեջ։ Սրանից եզրակացնում են, թե Պրոկոպիոսը կարդացել էր հիշյալ Պատմությունը, որ կարող էր միայն Փավստոսինը լինել, և կարդացել է հունարեն, ուրեմն, Պատմության սկզբնագիրը գրված է եղել հունարեն։ Ենթադրենք[1], թե Պրոկոպիոսը հիրավի Փավստոսի Պատմությունից է ծանոթ Արշակ թագավորի այս արկածներին, բայց մի՞թե սրանից հետևում է, թե նա անպատճառ հունարեն պետք է կարդացած լիներ այդ պատմությունը։ Չէ՞ր կարող ինքը՝ Պրոկոպիոսը հայերեն կարդացած լինել, որի մեջ ոչ մի անհավանականություն չկա. հիշենք ինչ որ պատմում է Անանիա Շիրակունին իր հայագետ հույն ուսուցիչ Տյուքիկոս մաթեմատիկոսի մասին։ Չէ՞ր կարող, վերջապես, մի ուրիշը Պրոկոպիոսի

---

*1 Ասում ենք «ենթադրենք», որովհետև Պրոկոպիոսի Պատմության մեջ շատ կետեր կան, որ չեն համաձայնվում Փավստոսին և ենթադրել են տալիս մի ուրիշ աղբյուր։ Այսպես, նա Պարսից թագավորին շարունակ կոչում է Բակուր, մինչդեռ Փավստոսի մոտ Շապուհ է, և Պրոկոպիոսը չէր կարող չգիտենալ այս շատ հայտնի անունը։ Հմայության ժամանակ, ըստ Պրոկոպիոսի, քաղդյանները առաջարկում են թագավորին, որ իրենք էլ ներկա լինեն փորձին՝ իբրև վկաներ. մինչդեռ ըստ Փավստոսի՝ Շապուհը հրամայում է բոլորին դուրս գալ խորանից, և ինքը մենակ է մնում Արշակի հետ։ Պրոկոպիոսը չի պատմում ընթրիքի ժամանակ Արշակի համեցուն սպառնալիքը Շապուհին՝ քաղդեականների ներկայությամբ, որով վճռվեց նրա բախտը։ Պրոկոպիոսը չի հիշում Դրաստամատի անունը և նրա անձնազոհությունը Արշակից հետո և այլն։ Սրանք ցույց են տալիս, որ Պրոկոպիոսը կամ մի ուրիշ՝ մեզ այժմ անհայտ գրավոր աղբյուրից է վերցրել իր պատմածը Արշակի մասին, կամ լսել է բերանացի ավանդություններից, որոնց մեջ աղավաղված է եղել Փավստոսի պատմածը։*

համար հայերենից հունարեն թարգմանած լինել Փավստոսի այս կտորները:

4. Հեղինակի հույն լինելուն ապացույց են համարում և այն, որ, իբր թե, նա ատում է հայերին, նախատինքներ է թափում նրանց վրա: Այսպես մտածողները մոռանում են, որ քննադատելը, հանդիմանելը չի նշանակում ատել: Եթե հայրը պատժում, նախատում է որդուն նրա պակասությունների համար, սա չի նշանակում, որ նա ատում է որդուն, օտար է, այլ նշանակում է, որ նրան սիրում է և խրատներով ու պատիժներով աշխատում է ուղղության բերել: Եթե նկատի ունենանք ամեն ինչ չափազանցությամբ պատմելու Փավստոսի ընդհանուր սովորությունը, ապա պետք է խոստովանենք, որ Փավստոսը ոչ մի տեղ այնքան ճշմարտախոս չէ, որքան ազգի դեմ ուղղած հանդիմանությունների մեջ, երբ, իբրև կրոնավոր, նկատում է նրանց բարքերի հակաքրիստոնեական ուղղությունը: Եթե ազգի պակասությունները հանդիմանելը ատելության կամ օտարազգի ծագման նշան լիներ, ապա Խորենացին ավելի հայատյաց և օտարազգի պետք է համարվեր, որ հայ ժողովրդի ամեն մի դասակարգի ճակատին խարանի նման դրոշմել է նրանց պակասությունները: Փավստոսը ոչ միայն հայերին չի ատում, օտարազգի չէ, այլև չափազանց հայասեր է, նախանձախնդիր, ինչպես կտեսնենք հետո, բայց վերոհիշյալ կարծիքն ունեցող բանասերները այդ չեն նկատել:

5. Դարձյալ հեղինակի օտարազգի լինելուն իբրև ապացույց մեջ են բերում այդ բանասերները, թե Փավստոսը չի ասում «թագավորն մեր», «աշխարհս Հայոց», այլ իբրև օտար՝ երրորդ դեմքով—«թագաւորն Հայոց», «աշխարհն Հայոց»: Այդ դիտողությունն էլ զուրկ է նշանակությունից: Ազգը կամ ազգի թագավորները երրորդ դեմքով նշանակելը այն ժամանակվա գրելու սովորությունն էր: Կորյունը, որ անպայման հայ է, միշտ գրում է երրորդ դեմքով—«Գիրս նշանագրաց Հայաստան ազգին», «դառնայր յերկիրն Հայոց», «աշխարհին Հայոց» «թագաւորին Հայոց, որոյ անուն կոչէր Վռամշապուհ», «Վռամշապհոյ արքային Հայոց» և այլն: Բայց Փավստոսը առաջին դեմքով էլ է գրում—«եկն եհար յերկիրս Հայոց», «տայցեն նմա զաշխարհս Հայոց», «եկն եհաս յերկիրս Հայոց» (և դրա կողքին՝ «ընդ երկիրն Հայոց») և այլն: Ուրեմն, երրորդ դեմքով գործածությունը սովորական մատենագրական ձևն է եղել, իսկ «երկիրս Հայոց», «աշխարհս Հայոց» թեկուզ մի անգամ էլ պատահեր, կնշանակեր, թե հեղինակը հայ է, որովհետև Հայոց աշխարհը կոչում է իբրև իր աշխարհը: Նույնը պետք է ասել և այն մասին, որ իբր թե Փավստոսը պարծանքով է հիշում Հունաց թագավորներին ու քաղաքները— «մեծ թագաւորն Յունաց», «մեծ քաղաքին Աթենացւոց»: Ի՞նչ զարմանք, եթե Փավստոսը մեծ կոչեր, ինչ որ արդարև մեծ էր, բայց զարմանքն այն է, որ Փավստոսը մեծ մակդիրը տալիս է նրանց, որոնց չէր կարելի այսպես որակել—«թագաւորն մեծ Արշակ», «մեծ թագաւորն Վարազդատ», «զմեծ քաղաքն Երուանդաշատ», «քաղաքին մեծի Արտաշատու» և այլն: Հայոց թույլ վասալ թագավորներին և հայոց քաղաքները մեծ կոչելու համար հարկավոր էր հայրենասիրության մի փոքր քանակ:

6. Բերում են, վերջապես, այն փաստը, թե Փավստոսի Պատմությունը

պարունակում է այնպիսի մանրամասն և ճիշտ նկարագրություններ անցքերի, որոնք կարող էր անել այդ անցքերին ժամանակակից և ականատես անձը, որից եզրակացնում են, թե հեղինակն ապրել է Դ դարում, ուրեմն, հույն Փավստոս եպիսկոպոսն է: Ներսես Մեծի թունավորման նկարագրությունը արդարև կարող է այսպիսի ենթադրության տեղիք տալ. բայց ի՞նչ ասենք այն բազմաթիվ անցքերի մասին, որոնց չէր կարող ականատես լինել հեղինակը, կամ որոնք բնավ տեղի չեն ունեցել, բայց Փավստոսի կողմից մանրամասն նկարագրված են իբրև եղելություն: Այսպես, օրինակ, հեղինակը չէր կարող ներկա և ականատես լինել Պապ թագավորի դավաճանական սպանության (Ե, լբ), Դղակ մարդպետի սպանության թագավորի ապարանքում (Ե, գ) կամ Արշակ թագավորի հմայության փորձին Շապուհ թագավորի վրանում (Դ, ծդ), սրբերի հոգիների ժողովի գումարվելուն սրբուհի Թեկղինի վկայարանում (Դ, ժ), Վաղես կայսրի ունկնդրության Ներսես Մեծի երկար խրատին (Դ, ե): Վերջին երեքը մտացածին բաներ են, ապա և նրանց նկարագրությունը հեղինակի երևակայության ծնունդն է: Զրույցները, հեքիաթները լի են մանրամասն նկարագրություններով, բայց ո՞վ կարող է ասել, թե նրանց հեղինակները ականատես կամ ժամանակակից են եղել իրենց նկարագրած անցքերին: Խորենացին մանրամասն նկարագրում է Չիրավ դաշտի ճակատամարտը (Գ, լե), բայց հայտնի է, որ ժամանակակից և ականատես չէ:

Առայժմ թողնելով Փավստոս Բուզանդ օտարազգի անվան բացատրությունը, տեսնում ենք, որ բոլոր այն կետերը, որ բերվել են իբրև ապացույց հեղինակի հույն լինելուն, համոզիչ չեն և չեն կարող խախտել այն տեսակետը, թե Փավստոսի Պատմության հեղինակը հայ է և գրել է հայերեն:

Այս վերջին տեսակետն ունեն, ինչպես վերը տեսանք, Ինճիճյանը, Գաթըրճյանը, Տաշյանը (գուցե Մառը), Գելցերը և այլք: Այս տեսակետը ամենից մանրամասն և բազմակողմանի կերպով ապացուցված է իմ «Ուսումնասիրություն Փավստոս Բուզանդի» քննության մեջ («Հանդես ամսօրյա», 1896, փետր.— մարտ—ապրիլ համարներում): Գարագաշյանը տատանվող դիրք է բռնում: Նա իր Քննական Հայոց պատմության մեջ և «Հանդ. ամսօրյա»-ում տպված հոդվածում (1896, հուլիս) Փավստոսի Պատմությունը համարում է թարգմանություն հունարենից, բայց նույն հոդվածում (էջ 201) կասկածանքով հայտնում է. «Այսպես է և Բյուզանդ, որո հայերենն հայտնի չէ, թե թարգմանությո՞ւն է, թե բնագիր, մանավանդ թե գրության ոճին նայելով կրթվի բնագիր քան թե թարգմանություն»:

## ՓԱՍՏԱՐԿՈՒՄՆԵՐ ՀՕԳՈՒՏ ՀԵՂԻՆԱԿԻ ՀԱՅ ԼԻՆԵԼՈՒՆ

Ծանոթանանք այժմ այն փաստերին, որոնք վկայում են, թե Փավստոսի Պատմության հեղինակը հայ է, գրել է հայերեն, հինգերորդ դարի երկրորդ կեսին:

Պատմության հեղինակը ժամանակակից չէ իր պատմած դեպքերին:

Զանազան ապացույցներ կան այս բանի համար: Փավստոսի Պատմությունը ծայրեծայր լիքն է անհավատալի առասպելներով, չափազանցություններով, հրաշքներով. այնքան շատ են նրանք, որ օրինակներ բերելն ավելորդ է: Որտեղի՞ց են առաջ եկել այս անիրական տեղեկությունները: Դրանք հեղինակը չի ստեղծել իրենից՝ գիտակցաբար ստեր հորինելով, դրանք ժողովրդի ստեղծագործություններն են, մի որևէ աչքի ընկնող դեպք, բերնից բերան անցնելով, սերնդից սերունդ ավանդվելով, հետզհետե զարգացել ու զարդարվել է ժողովրդի երևակայությամբ և կատարյալ վիպական բնույթ է ընդունել՝ բնականից գերբնականի փոխվելով: Այսպես են ստեղծվում սովորաբար ժողովրդական ավանդություններն ու հրաշքները: Ժողովրդական ավանդության գոյությունը Փավստոսի Պատմության մեջ արդեն շատերն են նկատել բանասերներից, ինչպես վերը տեսանք: Երկու բանասեր նույնիսկ այնքան առաջ են գնացել, որ փորձել են, մեկը մյուսից անկախ, Փավստոսի պատմածը տողատել, չափական ձևերի վերածել, ինչպես «Սասնա ծռեր»-ի պատումները[1]: Արդ՝ այն հանգամանքը, որ Պատմության հեղինակին իբրև աղբյուր են ծառայել ժողովրդական ավանդությունները կամ վեպը, ցույց է տալիս, որ նա ժամանակակից չէ այն իրական անցքերին, որոնցից ձևացել են ավանդությունները կամ վեպը. նա այնպես լսել է ժողովրդից, այս կամ այն ծերունու կամ գուսանի բերանից ու գրի առել:

## ԱԿՆԱՐԿՈՒԹՅՈՒՆՆԵՐ Ե ԴԱՐԻ ԱՆՑՔԵՐԻ ՄԱՍԻՆ

Փավստոսի Պատմության մեջ երկու տեղ, տեսիլքի կամ անեծքի ձևով, կան ակնարկություններ հինգերորդ դարի անցքերի մասին: Մանուկ Հուսիկը, որ տխրում էր իր երկու որդիների անառակ վարքի պատճառով, տեսիլք է տեսնում, որի մեջ աստծու հրեշտակը նրան մխիթարում է՝ ասելով, թե նրա զավակից ուրիշ զավակներ կծնվեն, որոնք Հայաստան աշխարհը կլուսավորեն, գիտություն և իմաստություն կտարածեն, նրանց միջոցով Քրիստոսը շատ լեզուներով կփառավորվի և այլն (Գ, Ե): Հրեշտակը շարունակ հոգնակի դեմք է գործածում Հուսիկի այս շնորհալի զավակների մասին խոսելիս, ուրեմն, այս խոսքերում ակնարկություն կա ոչ միայն Ներսես Մեծի, այլև ս. Սահակի (զուգե և Մեսրոպի) մասին, որոնք լուսավորություն տարածեցին Հայաստանում և ս. Գիրքը թարգմանեցին հայերեն, որով Քրիստոսը շատ լեզուներով փառավորվեց: Այստեղ, ուրեմն, նկատում ենք ակնարկություն հինգերորդ դարի առաջին կեսի մատենագրական շարժման մասին՝ ս. Սահակի և Մեսրոպի անմիջական մասնակցությամբ: Ուրիշ տեղ (Գ, ԺԵ) Ներսես Մեծը անիծում է Արշակին Գնելի անպարտ սպանության պատճառով և ի միջի այլոց ասում է. «Դուք՝ Արշակունիներդ, կխմեք վերջին բա-

---

[1] *Ակինյան, «Մեսրոպ եպիսկոպոս Բագրատունեաց», յաւելուած, «Երգ տափանացն Տիրիթայ», էջ 105—135. Մ. Աբեղյան, «Սովետական գրականություն», 1941, հունվար, էջ 78, «Սասունցի Դավիթ», էջ 57 և այլն։*

ժակը, կխմեք կհարբեք, կկործանվեք և այլևս ոտքի չեք կանգնի», որ պարզ ակնարկություն է Արշակունյաց թագավորության վերջանալու մասին: Արշակունյաց թագավորության կործանումը, Հայաստանի՝ օտար թշնամիների լծի տակ ընկնելն ավելի դառն խոսքերով գուշակում է նաև Դանիել քորեպիսկոպոսը (Գ, ժդ): Սրանք էլ ապացույց են, որ Փավստոսի Պատմության հեղինակին հայտնի էին Հայաստանի անցքերը հինգերորդ դարի առաջին կեսում, ուրեմն, այդ Պատմությունը գրված է այս ժամանակից հետո:

Փավստոսի Պատմությունը, որ 65 տարվա ժամանակամիջոց է ընդգրկում՝ 319 թվականից մինչև 384 թվականը, բյուզանդական միայն մի կայսրի անուն գիտե, Վաղեսին (այն էլ ժամանակագրական սխալով), այնինչ այդ ժամանակամիջոցում Բյուզանդիայում բացի նրանից թագավորել են Կոստանդ Բ, Հուլիանոս, Գրացիանոս, Թեոդոս Մեծը: Սրանցից ոչ մեկին չգիտե Պատմության հեղինակը, միշտ գործ է ածում անորոշ կերպով՝ «թագաւորն Յունաց»: Ժամանակակից հեղինակը չէր կարող այնքան տգետ լինել, որ չգիտենար, թե իր ապրած ժամանակ ո՞վ էր Հունաց այդ թագավորը, որ այնքան մեծ դեր էր խաղում Հայոց պատմության մեջ: Այս անգիտությունը դարձյալ ապացույց է, թե հեղինակը ավելի ուշ ժամանակ է գրել՝ ի լրո, և պատմողներն իրենք էլ չեն իմացել անցած-գնացած Հունաց թագավորների անունները:

## ԺԱՄԱՆԱԿԱԳՐՈՒԹՅՈՒՆ ՉՈՒՆԻ

Մի հեղինակ, որ ժամանակակից է իր պատմած անցքերին, պետք է ճիշտ ժամանակագրություն ունենա, թեկուզ ոչ մանրամասն: Փավստոսը ժամանակագրություն չունի: Նա Հայոց հինգ թագավորների պատմությունն է գրում՝ Խոսրով Կոտակի, Տիրանի, Արշակի, Պապի, Վարազդատի. բայց ոչ մեկի մասին չի հիշում, թե ե՛րբ և քանի՛ տարի թագավորեց ու ե՛րբ մեռավ: Նրա պատմած անցքերի մեջ ժամանակագրական հաջորդականություն չկա, ամեն մի գլուխ մի առանձին դրվագի նկարագրություն է, ու գլուխները մեծ մասամբ սկսվում են «ապա», «յայնմ ժամանակի», «եւ այսորիկ» անորոշ խոսքերով, և կարող են մեկը մյուսից առաջ կամ ետ դասավորվել կամ դուրս գցվել՝ առանց Պատմության ամբողջությանը վնասելու: Շապուհի՝ Արշակի դեմ մղած պատերազմներում հեղինակը հիշում է 23 ճակատամարտ, ամեն մեկում նշանակելով Պարսից զորավարի անունը, մեծ մասամբ ուղեկցությամբ Մերուժան Արծրունու: Տասնութ ճակատամարտ հիշելուց հետո (Դ, իզ—խզ) անտեղի կերպով պատմում է Պապի պղծագործության տեսարանը, որից հետո էլի շարունակում է թվել հինգ ճակատամարտ: Ինչպե՞ս է ընկել Պապի վարքի դրվագը Արշակի պատերազմների շարքի մեջ, մնում է հանելուկ:

Երբ մենք փորձում ենք Փավստոսի հաղորդած պատմական տեղեկությունները ժամանակագրական հողի վրա դնել, հանդիպում ենք խոշոր սխալների, քաոսային խառնաշփոթությունների: Բերենք մի քանի օրինակ.

Փավստոսը վկայում է, որ Արշակ երկրորդը թագավորել է Պարսից Ներսեհ արքայի և Հունաց Վաղես կայսրի ժամանակ՝ նրանց փոխադարձ համաձայնությամբ, մի պատերազմից հետո, որի ժամանակ կայսրը լոտեսել է Պարսից բանակը, գերի է բռնել Ներսեհի կանանց (Գ. իա, Դ, ա): Իրականում Ներսեհը թագավորել է 293—302 թվականներին, իսկ Վաղեսը՝ 364—378, ուրեմն, նրանք իրար ժամանակակից չեն և չէին կարող իրար հետ պատերազմել: Արշակն էլ ո՛չ Ներսեհի ժամանակ է թագավորել և ոչ Վաղեսի: Իսկ Պարսից բանակը լոտեսողն ու Ներսեհի կանանց գերի բռնողը եղել է Գաղերիոս զորավարը Դիոկղետիանոս կայսրի ժամանակ՝ 297-ին, և այս անցքի հետ կապ չունի Արշակի թագավորելը, որ տեղի ունեցավ շատ հետո (ըստ Խորենացու՝ 339-ին, իսկ ըստ Գարագաշյանի՝ 353-ին):

Փավստոսը պատմում է, թե Արշակ թագավորը Ներսես Մեծին ձեռնադրել տվեց կաթողիկոս և նրան Վաղես կայսեր մոտ ուղարկեց պատ~ամավոր. Ներսեսը չկամեցավ աղոթել արիանոս կայսեր հիվանդ որդու համար, և երկխան մեռավ. զայրացած կայսրը նրան աքսորեց մի անմարդաբնակ կղզի, որտեղ նա մնաց 9 տարի՝ մինչև Վաղեսի մահը: Հայաստան դառնալով՝ նա ականատես եղավ Գնելի սպանությանը: Սրանից հետո Արշակը ամուսնացավ Գնելի այրու՝ գեղեցկուհի Փառանձեմի հետ: Ապա Արշակը իր զորքով գնում է Հունաց դեմ և առանց սպասելու պարսիկների գալուն, կոտորում է Հունաց ամբողջ զորքը ու կատարյալ հաղթություն տանում: Շապուհը գալիս է պատերազմի տեղը, տեսնելով Արշակի գործած քաջությունը՝ կամենում է նրան արժանապես վարձատրել, ի միջի այլոց ցանկանում է նրան կին տալ իր դստերը: Արշակի աները՝ Անդովկը, նկատելով, որ այս ամուսնությունը կարող է արհամարհանք ու վտանգ բերել իր Փառանձեմ դստերը, սուտ վկաների միջոցով Արշակին երկյուղ է ներշնչում, իբր թե Շապուհը մտադիր է նրան սպանել, և փախչել է տալիս Շապուհի մոտից: Շապուհը մարդ է ուղարկում, ետ է կանչում: Արշակը չի գալիս: Շապուհը զայրանում է Արշակի վրա և ուզում է վրեժխնդիր լինել, բայց ութ տարի լռում է, քանի որ պատերազմները շարունակվում էին հույների հետ: Երբ սրանք վերջանում են, ապա սկսվում է երկարատև պատերազմ Շապուհի և Արշակի միջև, որը տևում է ավելի քան երեսուն տարի, որից հետո Արշակն ստիպված գնում է Պարսկաստան և այնտեղ կորչում Անհուշ բերդում:

Մի կողմ թողնելով անցքերի վիպական բնույթը՝ կանգ առնենք ժամանակագրության վրա: Որքան էլ տարիների թիվը կրճատենք, կողմնակի անցքերի ժամանակները դուրս գցենք, այնուամենայնիվ կմնան Արշակի թագավորության համար Փավստոսի հաղորդած հետևյալ թվերը. 9 տարի Ներսես Մեծի աքսորի տարիները, 8 տարի, երբ Շապուհը հետաձգում է Արշակի հետ պատերազմելը՝ Հունաց հետ զբաղված լինելու պատճառով, և 30 տարի՝ նրա պատերազմները Արշակի հետ. ուրեմն, ըստ Փավստոսի՝ Արշակը թագավորել է ամենաքիչը 47 տարի: Եթե նա թագավորած լիներ, ըստ Խորենացու՝ 339 թվականին, ապա նրա թագավորությունը պետք է վերջանար 386 թվականին, և եթե վերցնենք ըստ Գարագաշյանի՝ 353-ին,

ապա նրա թագավորությունը պետք է տևեր մինչև 400 թվականը, իսկ եթե՝ ըստ Փավստոսի՝ նրա թագավորության սկիզբը դնենք Վաղես կայսրի օրով, ապա այս թագավորությունը պետք է վերջանար հինգերորդ դարի տասական թվականներին։ Թեկուզ Ներսեսի 9 տարին (ամս իոն՝ ըստ Փավստոսի) ուղղենք 9 ամիս, ուրեմն, Արշակի թագավորության վերջին տարիները 9 տարով առաջ գցենք՝ 379-ին կամ 405-ին, այնուամենայնիվ բոլորն էլ սխալ կլինեն, քանի որ ստույգ հայտնի է, թե Արշակը Անհուշ բերդը դրվեց 368-ին, իսկ նրա որդի Պապը թագավորեց 368-ին կամ 369-ին։

Մի ուրիշ հաշիվ. ըստ Փավստոսի՝ Արշակն ամուսնանում է Գնելի այրու՝ Փառանձեմի հետ, որից ունենում է մի որդի՝ Պապ անունով. իսկ սա չափահաս դառնալով ու ամուսնանալով՝ ունենում է երկու որդի՝ Արշակ և Վաղարշակ։ Սրանք մեծանում ու ամուսնանում են և միասին թագավորում Մանուելի խնամակալության ժամանակ (Ե, իդ), որից հետո տեղի է ունենում Հայաստանի բաժանումը Պարսից և Հունաց միջև։ Քանի որ Արշակը Փառանձեմի հետ ամուսնացել է Ներսես Մեծի աքսորից վերադառնալուց կամ, որ նույն է, Վաղես կայսրի մահից հետո, ուրեմն այս ամուսնությունը և Պապի ծնունդը կարող էին տեղի ունեցած լինել ամենավաղը 378—379 թվականներին. Պապի որդիները կարող էին ծնվել 398—399-ին և ամուսնանալ ամենավաղը 410—12 թվականին։ Մինչ ըստ ստույգ տվյալների՝ Պապն սպանվել է 374 թվականին, իսկ Հայաստանի բաժանումը եղել է 384-ին։

Բավականանում ենք այս մի քանի օրինակներով[1]։ Այսքանից էլ պարզ երևում է, որ Փավստոսի պատմած անցքերը լի են անտեղություններով ու հակասություններով, քանի որ ժամանակագրորեն սխալ են դուրս գալիս։ Անցքերին ժամանակակից հեղինակը չէր կարող այսպիսի ակնհայտ սխալներ գործել. ուրեմն, նա գրի է առել զանազան աղբյուրներից ծագած ավանդություններ, որոնց մեջ սուտն ու ստույգը խառնված են իրար, և հեղինակը, անկարող լինելով դրանք ստուգել, անխտիր գրի է առել, որից առաջ են եկել մեր այժմ նկատած անհեթեթությունները։

Մինչև այստեղ բերվածները անուղղակի վկայություններ էին, թե հեղինակը ժամանակակից չէ իր պատմած անցքերին, այսինքն՝ նա չի ապրել չորրորդ դարում, ուրեմն, բնագիրը հունարեն գրված չի եղել։ Այժմ դառնանք ուղղակի վկայությունների, որոնք ցույց են տալիս, թե Փավստոսի Պատմությունն ամբողջ գրված է հինգերորդ դարի երկրորդ կեսում, ուրեմն, գրված է հայերեն և հայի ձեռքով։

---

[1] Ժամանակագրական ուրիշ անտեղություններ և մանրամասն ժամանակագրական հաշիվներ բերված են իմ «Ուսումնասիրություն Փավստոս Բուզանդի» քննության մեջ, «Հանդ. ամսօրյա», 1896, փետր.—ապրիլ համարներում։

## ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ՀԱՅԵՐԵՆ ԳՐԱՎՈՐ ԱՂԲՅՈՒՐՆԵՐԸ

Այս վկայությունները նախ այն գրավոր աղբյուրներն են, որոնցից հեղինակը հաճախ օգտվում է պատմության ընթացքում:

Փավստոսի Պատմության մեջ մեծ քանակությամբ քաղվածքներ կան ս. Գրքից, որոնք բոլորը բերված են ըստ հայերեն թարգմանության, որ կատարված ու ավարտված է հինգերորդ դարի երեսնական թվականներին (գոնե գլխավոր մասերը): Եթե Պատմությունն սկզբնապես հունարեն գրված լիներ և ապա հինգերորդ դարում հայերեն թարգմանված, այս մեջբերումները թարգմանիչը ինքը պետք է թարգմաներ, որ հարկավ կտարբերվեր ս. Գրքի թարգմանությունից:

Նպատ լեռան վրա Ներսես Մեծը աղոթելիս մի ընդարձակ կտոր բերում է երեք մանուկների օրհնությունից, որոնք Նաբուգոդոնոսորի հրամանով նետվել էին Բաբելոնի հնոցը՝ այրվելու համար (Ե, դ):

Արդ, այս ընդարձակ կտորը, որ սկսվում է «Յիրաւունս անցուցեր դու զայս ամենայն ընդ մեզ» և վերջանում է «Փառաւորեալդ ես ի վերայ ամենայն տիեզերաց», բառացի առնված է հայերեն ժամագրքից և ոչ ս. Գրքից (Դանիել, Գ), որ տարբերվում է ժամագրքից:

Սամբրեի անապատում կատարված հրաշքի ժամանակ (Ե, իը), երբ պատարագիչ քահանան աղոթում է մի թերահավատ միաբանի համար, մեջ է բերված մի ընդարձակ աղոթք, որ սկսվում է «Տէր աստուած զօրութեանց» և վերջանում է «որ քննես զսիրտս և զերիկամունս որդւոց մարդկան»: Այս ընդարձակ աղոթքն առնված է ս. Բարսեղի պատարագամատույցից, որ հայերեն թարգմանված է դարձյալ հինգերորդ դարում, բայց ներկայումս հայոց եկեղեցիներում չի գործածվում: Հ. Գաթըրճյանը, որ առաջին անգամ երևան է հանել այս փոխառությունը, վկայում է, թե Փավստոսի մոտ այս հատվածն ավելի անաղարտ է պահպանված, քան բուն պատարագամատույցի մեջ, այնպես որ Փավստոսով կարելի է ուղղել պատարագամատույցի մի քանի աղավաղությունները:

Պատմության հեղինակն օգտվել է նաև հայ պատմական աղբյուրներից՝ Կորյունից, Ագաթանգեղոսից և ս. Թադեոս առաքյալի վկայաբանությունից, որոնք առանձին կարևորություն ունեն այս Պատմության գրության ժամանակը բավական ճիշտ որոշելու համար:

Կորյունից առնված են հետևյալ հատվածները. «Եւ առեալ դառնայր անտի, հանդերձ շնորհատուր պարգևելովն, և որք ընդ նմա երթեալք՝ խռովքն ճանապարհորդ լինէր» (Գ, ժ):

Մի ընդարձակ հատված՝ «Եւ ոչ այնպէս մեծն Մովսէս—դիտաւորութիւն զճանապարհաց աւետաքերաց» (Գ, ժա), որի մեջ Կորյունը նկարագրում է Մեսրոպի վերադարձը Միջագետքից՝ աստվածատուր այբուբենով, իսկ Փավստոսը նույն խոսքերով նկարագրում է Մծբինի ս. Հակոբ հայրապետի իջնելը լեռից՝ Նոյի տապանից մի կտոր փայտով, որ հրեշտակը բերել էր նրան քնած ժամանակ[1]:

---

[1] *Ցետտեր Հայագետը կարծիք է հայտնել, թե այս հատվածում Կոր-*

«Քանզի յայտնեօք և ծածկելովք, քանզի միոյն միայն խամենազօրէն առ ամենայն ազգս երկրածնաց շնորհքն մատակարարէին» (Գ, ժ), որ Փավըստոսի մոտ աղավաղված է հինգ բառ բաց թողած լինելու պատճառով:

«Սա գհետ հօրն իւրոյ Վրթանայ զառաքելական յաջորդէր, հայրական չափոցն նմանեալ ծնունդ... զամենայն ըստ պարգևացն աստուծոյ զշնորհացըն կատարէր» (Գ, ժբ): (Առաջին երկու համեմատությունները ցույց են տրված նաև ուրիշներից:) •

Մեր այժմյան Ագաթանգեղոսին Փավստոսը լավ ծանոթ է և գրեթե նրա բոլոր մասերից փոխառություններ է անում կամ ակնարկում է դրանց: Նա գիտե, որ Սասանյաններն սպանել են Արտավանին, որի պատճառով հայ Արշակունիները վրեժխնդիր են եղել նրանցից (Փավստոս, Գ, ծդ, Ագաթ., Ա, Բ), որ ս. Գրիգորը Անակի որդին է (Գ, Բ—Ագաթ., ժա), որ նա չարչարվել է հայերից քրիստոնեության պատճառով (Գ, ժդ—Ագ., գ—ժ), որ Գրիգորի չարչարանքներից հետո եկել են Հռիփսիմյանք, չարչարվել են ու նահատակվել (Գ, ժգ—Ագ., ժդ—ժթ), որ թագավորի անասնական կերպարանք է ստացել, որը և առիթ է եղել հայոց դարձին (Գ, ժգ—Ագ., Ի), որ ս. Գրիգորը քարոզել, վարդապետել է հայերին (Գ, ա, դ., ԱԳ— Վարդապետութիւն և այլն), որ Քրիստոսի նախավկաների՝ Գայանեի, Հռիփսիմեի և նրանց գործակիցների վրա վկայարաններ են շինվել Այրարատյան գավառում (Գ, ժ—Ագ., հզ), որ ս. Գրիգորը Հայոց առաջին կաթողիկոսն է եղել (Գ, ժ—Ագ., ճժա և հաջ.), որ սովորություն է եղել կաթողիկոսության ձեռնադրությունը Կեսարիայից ստանալ (Գ, ժբ, Ե, իթ,—Ագ., ճժգ, ճժզ), որ ս. Գրիգորը հրաշքով կործանել է մեհյաններ Տարոնի Աշտիշատում (Գ, գ, Դ, դ—Ագ., ճժգ—ճժե), որ նա այստեղ է շինել առաջին եկեղեցին ս. Հովհաննեսի անունով (Գ, գ, ժգ, և այլն—Ագ., ճժդ), որ այստեղ մկրտություն է կատարել և ձեռնադրություն է արել (Գ, ժգ—Ագ., ճժե), որ պատվիրել է տարեցտարի տոնել սրբերի հիշատակը (Գ, գ, ժգ, Դ, ժե—Ագ., ճժե), որ Տրդատը եկեղեցուն նվիրել է կալվածքներ՝ յոթ-յոթ հող (Դ, ժդ, Ե, լա—Ագ., ճժթ), որ ս. Գրիգորը քաշվել է անապատ ճգնելու (Զ, ժզ—Ագ., ճիզ), որ նա ունեցել է երկու որդի՝ Վրթանես և Արիստակես (Գ, բ, գ—Ագ., ճիզ), որ կրտսերը ս. Գրիգորից ձեռնադրվել և գործակից է եղել հորը (Գ, բ, գ—Ագ., ճեզ), որ հրեշտակն սպասավորելիս է եղել Կոստանդիանոսին (Գ, ժ—Ագ., ճիե), որ Նիկիո ժողովն է գնացել Արիստակեսը՝ ս. Գրիգորի որդին (Գ, ժ—Ագ, ճիէ):

Եթե նկատի առնելու լինենք, որ Փավստոսը նպատակ չի ունեցել Լուսավորչի պատմությունը գրելու, այլ հարմար առիթներով զանազան տեղերում հարևանցի հիշատակություններ է անում նրա մասին, այլևս տարակույս չի մնա, որ նա ծանոթ է Ագաթանգեղոսի Պատմությանն ամբողջապես՝ նույն

---

*յունն է օգտվել Փավստոսից, որը անհավանական է։ Հայերեն «աստվածատուր» գրերը կարող են համեմատվել Մովսես մարգարեի բերած «աստվածատուր» պատվիրանների հետ և ոչ թե տապանի մի կտոր փայտի հետ*

պարունակությամբ, որ ունի մեր ձեռքը հասած խմբագրությունը, որի գրեթե բոլոր մասերից ծայրաքաղ տեղեկություններ է հաղորդում[1]:

Գուցե լինի առարկություն, թե Փավստոսը ծանոթ է եղել ոչ թե հայերեն Ագաթանգեղոսին, այլ նրա սկզբնական հունարեն բնագրին (ինչպես ոմանք ենթադրում են): Այս կասկածն էլ փարատվում է նրանով, որ Փավստոսի երկում շատ տեղեր բառացի պատահում են հատվածներ հայերեն Ագաթանգեղոսից: Այսպես են.

«Հօրն էր գործակից... **մինչև յօրն քրիստոսակոչ** հանգստեանն իւրոյ» (Գ, Բ): (Ընդգծվածները բառացի պատահում են Ագաթանգեղոսի մոտ):

**«Ժողովէր առ ինքն զբազմութիւն եպիսկոպոսացն սրբոց... զի ձեռնադրեսցեն զսուրբն Ներսէս»** (Դ, դ): «Եւ բազում նեղելոց և տառապելոց գեբեաց փրկութիւն և գերեդարձ **առնէր, զորս ահիւ քարոզութեանն փառացն Քրիստոսի»** (Դ, դ. Փավստոսի բնագիրն այստեղ աղավաղված է՝ դուրս ընկած լինելով Ագաթանգեղոսի «կորզելով զնոսա» բառերը): «Ժողովել ի յիշատակ սրբոցն, որ էին անդ, կատարել անդ ամի եօթն անգամ... ամի ամի ժողովեալք զօր տօնին... **խմբեալ ցնծային»** (Գ, գ): **«Զաւետարանական ընթացսն և զվերակացութիւն եկեղեցւոյ սրբոյ—պահօք և աղօթիւք և ուժգին խնդրուածովք»** (Գ. զ): **«Զի յառաջ նախ անդ շինեալ էր զսուրբ եկեղեցին և ուղղեալ սեղան յանուն տեառն»** (Գ. ժդ): **«Զունտն յիշեալ զդաշանցն կտակաց... միջնորդութեամբ** ի մէջ կայսերն Կոստանդիանոսի և ի մէջ թագաւորին Տրդատայ եղեալ էր» (Գ, իա): «Եւ **բազմացոյց զկարգս պաշտօնէից յամենայն տեղիս իշխանութեան** ի սահմանացն Հայոց և **յամենայն գաւառս կացոյց տեսուչս եպիսկոպոսս»** (Ե, իա): «Հանդերձ սաղմոսիւք և օրհնութեամբ, կանթեղիւք վառեալովք և մեծաւ պաշտամամբ և բ ա զ ո ւ մ յիշատակօք զսուրբն յուղարկեցին» (Ե, իդ): (Համեմատություններից առաջին վեցը ցույց են տրված և ուրիշներից:)

Թադեոս առաքյալի վկայաբանությանն էլ ծանոթ է Փավստոսը, գիտե, որ նա քարոզել է Հայաստանում և նահատակվել (Գ, ա, նույնը և Գ, ժդ **«զձեր քարոզն և զհրաւիրակն զառաքեալ առ ձեզ եկեալն սպանէք... նորա զմէրն կարծեցին սպանանել, հարցն ձեր զնորին առաքելոյն** (տաղ. առաքելոյն) և զհետ նորա նորին նմանին»): Սանատրուկ թագավորին կոչում է առաքելասպան (Գ, ա), մի քանի անգամ (Գ, գ, ժբ, ժդ) Հայոց հայրապետության աթոռը կոչում է Աթոռ և Վիճակ Թադեոս առաքյալի: Այս տեղեկությունները միայն Թադեոս առաքյալի վկայաբանության մեջ են պատահում, որտեղն և այստեղից գիտե Փավստոսը:

## ԳՐՈՒԹՅԱՆ ԺԱՄԱՆԱԿԸ

Վերը բերված գրավոր աղբյուրները անկասկածելի կերպով ցույց են տալիս, թե Փավստոսի Պատմությունը գրված է հինգերորդ դարում, հայերեն գրականության ստեղծվելուց, ս. Գրքի թարգմանությունից և հայոց եկեղե-

---

1 *Տե՛ս «Պատմութիւն Փ. Բուզանդի», «Հանդ. ամս.», 1896, էջ 82։*

ցիներում հայերեն ժամակարգություն մուծվելուց հետո: Բայց պատմական աղբյուրների հետ համեմատությունը հնարավորություն է տալիս ավելի ճիշտ որոշելու այն ժամանակը, երբ այս Պատմությունը գրվեց: Իրողությունը այն է, որ Փավստոսի Պատմությունը գրված է Կորյունից, Ագաթանգեղոսից և Թաղեոսի վկայաբանությունից հետո. այս գրվածքների ժամանակը որոշելով՝ կգտնենք նաև այն սահմանը, որից առաջ չէր կարող գրվել Փավստոսի Պատմությունը:

Կորյունի «Վարք սրբոյն Մեսրոպայ» գրված է հինգերորդ դարի քառասնական թվականներին (մասնավորապես ո՛ր թվականին, մեր հարցի համար նշանակություն չունի): Կորյունից լայն չափով օգտվել է Ագաթանգեղոսի խմբագիրը, այն աստիճան, որ շատ բանասերներ Կորյունին են համարում Ագաթանգեղոսի Պատմության թարգմանիչը (որն ինձ թվում է անհավանական): Իսկ թե ե՛րբ է գրվել կամ խմբագրվել Ագաթանգեղոսի Պատմությունը, այս հարցը դեռ չի լուծված որոշակի: Հ. Բ. Սարգիսյանը, զանազան գրչագրական անստույգ տեղեկությունների վրա հիմնվելով, Ագաթանգեղոսի թարգմանությունը համարում է կատարված 426—430 թվականներին՝ Կորյունի, Եզնիկի և ուրիշ թարգմանիչների հավաքական աշխատանքով («Ագաթ. և յուր բազմադարյան գաղտնիքն», եր. 319); Իրականությանն ավելի մոտ է մի ուրիշ բանասերի կարծիքը, թե Ագաթանգեղոսի երկը գրված է 445—460 թվականների միջև: Ես այս վերջին թվականը մի-երկու տարով էլ ներքև եմ իջեցնում հետևյալ պատճառով: Աչքի ընկնող երևույթ է, որ Կորյունը, որն այնքան հաճախ ու մեծ պատկառանքով հիշում է ս. Սահակ կաթողիկոսին, ոչ մի անգամ Գրիգոր Լուսավորչի անունը չի տալիս, ոչ մի անգամ չի հիշատակում, որ իր սիրած ուսուցիչը՝ Հայաստանի լուսավորիչը, պանծալի ծագում ունի, Գրիգոր Լուսավորչի զավակն է, նրա թոռան թոռնորդին, ինչպես գիտեն և կրկնում են Խորենացին ու Ղ. Փարպեցին: Սա նշանակում է, որ Կորյունը դեռ Գրիգոր Լուսավորչին չի ճանաչում: Նույն երևույթը տեսնում ենք և Եղիշեի մոտ: Մինչ Ղ. Փարպեցին առաջին կրոնական պատերազմի պատմության մեջ քանիցս հիշում է Գր. Լուսավորչին, Եղիշեն ոչ մի անգամ նույն անցքի պատմության մեջ չի հիշում: Նույնիսկ Ղևոնդ Երեցի ընդարձակ քարոզի մեջ, պատերազմի նախօրյակին, երբ սա հիշեցնում է բարեպաշտ մարդկանց օրինակներ Հին կտակարանից, և երբ անշուշտ պահանջվում էին հիշյալ Գրիգորի կրած չարչարանքները, Հայաստանի՝ քրիստոնեական լույսով լուսավորվելը, Ղևոնդն էլ զանց է անում այս անունը: Դեռ ավելին. Եղիշեն բերում է Հայոց ժողովի թուղթը՝ ուղղված Թեոդոս կայսրին, որով օգնություն են խնդրում պարսիկների դեմ: Այս թղթում հիշված է, որ Տրդատը քրիստոնեություն է ընդունել Հռոմի եպիսկոպոսից (և ոչ թե Գրիգոր Լուսավորչից): Սրանք էլ նշանակում են, թե Եղիշեն էլ, որ գրել է 461 թվականին՝ Պերոզի թագավորության հինգերորդ տարում, Գրիգոր Լուսավորչին դեռ չգիտե: Սրա պատճառն այն է, որ Գրիգոր Լուսավորիչը իր վսեմ կերպարանքով, իբրև խոստովանող, իբրև Հայաստանի լուսավորիչ և առաջին կաթողիկոս, առաջին անգամ ստեղծվել է

Ագաթանգեղոսի անունը կրող լեգենդար պատմության մեջ, իսկ մինչ այդ, մոտ 180 տարի, նրա անձնավորությունը մնացած է եղել մթության մեջ։ Արդ, քանի որ Ագաթանգեղոսի Պատմությունը 461 թվականին դեռ չկար, պետք է նրա գրության ժամանակը դնել այդ թվականից սկսած 4—5 տարվա ընթացքում, այսինքն՝ 461—465 թվականներին։ Ավելի ուշ դնել չենք կարող այն պատճառով, որ նրանից հետո է գրվել Թադեոս առաքյալի վկայաբանությունը, իսկ այս երկուսից հետո՝ Փավստոսի Պատմությունը։

Որ Թադեոս առաքյալի վկայաբանությունը գրված է Ագաթանգեղոսից հետո, երևում է նրանից, որ Թադեոս առաքյալի քարոզությունը Հայաստանում և նահատակությունը Սանատրուկի ձեռքով՝ Ագաթանգեղոսին հայտնի չեն։ Եթե այս բաները հայտնի լինեին Հայաստանում, անկարելի է, որ Ագաթանգեղոսը գանց աներ հիշել. անկարելի էր, որ Լուսավորիչն իր երկար քարոզների մեջ չհիշեցներ, որ հայ ազգի լուսավորության համար նախ արյուն է թափել Քրիստոսի աշակերտներից մեկը։ Մանավանդ, ընդարձակ վարդապետության մեջ, որտեղ հեղինակը թվում է Քրիստոսի առաքյալներին և յոթանասունևերկու աշակերտներին, նա Թադեոս առաքյալի լոկ անունն է հիշում մյուս առաքյալների թվում, և երբ հիշատակում է այն երկրները, որտեղ առաքյալները քարոզեցին, անորոշ կերպով ասում է. «Ոմանք ի Մարս և ոմանք ի Պարթևս, ոմանք ի Խուժաստան և ոմանք ի Միջագետս, ոմն ի կողմանս Գամրաց, ոմն ի Պոնտոս, ոմն յԱսիա, ոմն ի Փռյուգիա, ոմն ի Պանփիլիա» և այլն, առանց Հայաստանի անունը հիշելու։ Այս աչքի ընկնող երևույթը ուրիշ կերպ չի կարելի բացատրել, քան ենթադրելով, որ Թադեոս առաքյալի քարոզությունն ու նահատակությունը հայտնի դարձան Թադեոս առաքյալի վկայաբանության միջոցով, և այս վկայաբանությունը գրվել է Ագաթանգեղոսի Պատմությունը գրվելուց հետո։ Որ Թադեոս առաքյալի՝ Հայաստանում քարոզելը և այստեղ նահատակվելը շինծու են, կարիք չկա ապացուցելու։ Սա Հայաստանի ասորասեր հոգևորականության ստեղծած կեղծիքն է՝ հունասեր հոգևորականության ստեղծած Ագաթանգեղոսին ու Լուսավորչին իբրև հակակշիռ՝ Հունաստանից ծագած Գրիգորի նշանակությունը նսեմացնելու համար։ Բայց հեղինակը կամ հեղինակներն իրենց նպատակին չհասան. Լուսավորիչը դարձավ ամբողջ Հայաստանի ազգային սուրբը։

Արդ, քանի որ Փավստոսը գիտե թե՛ Ագաթանգեղոսին և թե՛ Թադեոս առաքյալի վկայաբանությունը, և մյուս կողմից Մովսես Խորենացին հինգերորդ դարի ութսունական թվականներին օգտվում է Փավստոսից (առանց անունը հիշելու), սրանից հետևում է, որ Ագաթանգեղոսի գրությունը պետք է դնենք 461—465-ին, վկայաբանությունը՝ 465—470-ին, իսկ Փավստոսի Պատմությունը՝ հինգերորդ դարի յոթանասնական թվականներին, վկայաբանությունից հետո, Խորենացուց առաջ*։

---

** Նկատի ունենալով հենց միայն այն հանգամանքը, որ Փավստոսի երկը գրված է մեսրոպյան շրջանի հայերենով, կարելի է ասել, որ այս կարծիքը իրականության չի համապատասխանում։— Խմբ.։*

Փավստոսի գործածած աղբյուրների քննությունը և ժամանակագրական հաշիվները այլևս ոչ մի տարակույս չեն թողնում, որ այս Պատմությունը գրված է հինգերորդ դարի երկրորդ կեսին, յոթանասնական թվականներին. սրանով էլ կանխորոշվում է, թե այս Պատմությունը գրված է հայի ձեռքով և հայերեն:

## ՀԵՂԻՆԱԿԻ ՀԱՅԱՍԻՐՈՒԹՅՈՒՆԸ

Բայց մենք ունենք նաև ուղղակի ապացույցներ հեղինակի հայ լինելու և հայերեն գրելու վերաբերյալ:

Արդարև, մեծ թյուրիմացություն էր հին բանասերների պնդումը, թե այս Պատմության հեղինակը ատում է հայերին, նախատում է նրանց, ուստի հույն է: Ընդհակառակն, Պատմությունը լիքն է այնպիսի տեղեկություններով, որ միայն հայը կարող էր գրել. ամբողջ գրվածքից զգացվում է հեղինակի ոգին. նա ոչ միայն հայ է, այլև ազգային պատվին նախանձախնդիր հայ, զորքի քաջությունները փառաբանող, Արշակունյաց թագավորների հավատարիմ ու անձնվեր պաշտպան: Որպիսի՜ գուրգուրանքով և պարծանքով է նկարագրում նա հայկական զորքը, նրա սարքն ու կարգը, նրա տիրասիրությունը. «Չորեքհարիւր հազար զօր կուռ վառեալք, որ ընտիրք և պատերազմողք էին, լի արութեամբ արուեստաց նահատակութեանն, նիզակաւորք, սուսերաւորք, աղեղնաւորք, անվրէպք, կորովիք, վաղրաւորք, սակրաւորք, որք ոչ գիտէին զերկիւղ զանգիտելոյ յարանց յախոյեանց. համակ հեծելազօրք զրահաւորք, պատենազէնք, սաղաւարտաւորք, դրօշաւորք, կազմ նշանաւորք, բազմածալն փողարօքն» (Դ, ի.):

Մի ուրիշ տեղ (Դ, իդ) նա գրում է. «Եւ գտան ի ժամանակին անդ ընդ ձեռամբն զօրավարին Վասակայ արք գործոց իբրև վաթսուն հազար, ընտիրք և պատերազմողք, որ միամիտք և միասիրտք էին միաբանութեամն գործոցն պատերազմին, հասանել մարտնչել ի վերայ որդւոց և կանանց իւրեանց, և ի վերայ աշխարհին դնել զանձինս իւրեանց մինչև ի մահ... հասանել մարտնչել ի վերայ եկեղեցեացն իւրեանց... փոխանակ բնակ տէրանց իւրեանց Արշակունւոց»: Նույնիսկ Շապուհ թագավորը, զմայլված հայ զորքի քաջության ու տիրասիրության վրա, իր իշխաններին սքանչանքով պատմում է իր տեսածը վերջին պատերազմում. «Յորժամ Հայոց նիզակաւորքն առաջի կարգէին, այսպէս յարձակէին, որպէս գլեառն մի բարձր և կամ որպէս զաշտարակ մի հաստաբեստ հզօր և անշարժ... մինչև անմի զզօրսն Արեաց առնէին: Եւ միւս ևս՝ որ ընդ այս եմ զարմացեալ ես, ընդ մտերմութիւն միամտութեանն Հայաստան գնդին ընդ տիրասիրութեանն: Զի այնչափ ամք են՝ զի տէրն նոցա Արշակ կորուսեալ է ի նոցանէն, և նոքա ի պատերազմին ի նա խրախուսէին: Եւ յորժամ զախոյեանսն ընկենուին, համակ ասէին՝ թէ «առ Արշակ», և նա չէր ի մէջ նոցա... Եւ կամ մոլեկան գունդն Մուշեղեան, զի ինձ այսպէս թուէր, եթէ հուր բոց ի գնդէն ելանիցէր և ի նրշանացն... Այլ, ասէր, երանի՜ որ Հայոց գնդին տէր իցէ այնպիսի տիրա-

սէր և միաբան միամիտ զօրացն» (Ե, Ե): Ահա այս տիրասեր ու միաբան զորքն է, որ Փավստոսի Պատմության մեջ հարյուրավոր անգամներ պատերազմներ է մղում թշնամիների դեմ և ոչ մի անգամ պարտություն չի կրում, միշտ հաղթում է թշնամիներին և հաճախ մինչև վերջին մարդը կոտորում է նրանց: Տասնյակ միլիոններով թշնամիներ են կոտորում Հայոց զորքերը, և իրենցից ոչ մի կորուստ, բացի չորս զորագլուխներից, որոնցից երեքը պատահականության զոհ են դառնում:

Ճիշտ է, Փավստոսը նկարագրում է մի քանի խոշոր արշավանքներ Հայաստանի վրա: Պարսիկները ավերում, քանդում են երկիրը, անթիվ մարդիկ կոտորում, բայց դրանք բնավ հետևանք չեն հայերի տկարության. դրանք տեղի են ունենում այն ժամանակ, երբ երկիրն անտեր է, թագավոր չունի, կամ երբ թագավորը սահմանն է պաշտպանում, իսկ թշնամին ուրիշ ճանապարհով գաղտագողի ներս է խուժում երկիրը, կամ մի այլ այսպիսի անզգուշություն հայերի կողմից. բայց ոչ մի անգամ իբրև հետևանք հայերի պարտության կամ տկարության:

Հայ Արշակունի թագավորները Փավստոսի աչքում Հայաստանի բնիկ տերերն են. հեղինակը շարունակ բնակ է կոչում նրանց: Նրանց համար ապրել ու մեռնելը հայ զորքի և զորավարների սուրբ պարտականությունն է: Ընազանդ և հավատարիմ մնալ Արշակունի թագավորներին՝ այս պատվերն էր, որ տալիս էին Մամիկոնյան զորավարները իրենց հաջորդներին: Հեղինակը բառեր չի գտնում պարսավելու համար այն մարդկանց, որոնք դավաճանել են Արշակունի թագավորին, թեկուզև անպիտան ու անմիտ լինի նա: Մեհրուժան Արծրունուն, որ ապստամբվել էր Հայոց թագավորների դեմ և Պարսից զորքին առաջնորդ էր հանդիսանում հաճախ Հայաստան արշավելիս՝ հեղինակը անվանում է «վատանշան», «չարագործ», «պիղծ», «անօրեն», «մեղավոր», «կախարդ»: Մի ուրիշ իշխան Սյունյաց տոհմից՝ Փիսակ անունով, Տիրան թագավորի սենեկապետը, մատնություն է անում իր թագավորի վրա Պարսից Վարազ-Շապուհ զորավարի մոտ... Նրան Փավստոսը նկարագրում է այսպես. «Այր մի անարգ, որ ոչ ինչ պակաս քան զոև էր մոլորութեամբ... գալս ամենայն լուալ Վարազ Շապուհ... ի կատաղախօս ի շնարեբանն Փիսակայ... Եւ այն բանքն, որ վասն որսոյն ի թագաւորէն ասացաւ, վաղվաղակի յունկն զօրավարին Պարսից հասանէին ի բերանոյ շողոքորդին, շոգմոգն, տիրանենգն և տիրադրուժն, տիրասպանուն և տիրամատնիչն Փիսակայ, յայն աշխարհակորույս յառնէ անտի» (Գ, Ի):

Փավստոսի Պատմությունից երևում է, որ նրա նկարագրած Պատմության շրջանում Արշակունի թագավորները թույլ և անզոր են եղել, խաղալիք երկու հզոր հարևանների՝ պարսիկների և հույների քաղաքականության կամ ուղղակի նրանց վասալ: Բայց սա չի խանգարում հայրենասեր հեղինակին՝ փքուն մակդիրներ տալ նրանց—«քաջարանց», «մեծ թագաւորն Հայոց» (շատ անգամ): Նրանց աղետալի վախճանը հետևանք է ոչ թե նրանց տկա-

րության, այլ պատահականության, դավաճանության, ներքին անմիաբանության: Վարազ-Շապուհը 3000 զորքով գալիս է Տիրանին հյուր, որ նրան միամտաբար ընդունում է իբրև բարեկամի. Վարազ-Շապուհը նրան բռնում է, հենց Հայաստանի սահմաններում էլ կուրացնում, որովհետև այդ ժամանակ Տիրանի մոտ չէին եղել զորքերը: Պապին Հունաց զորավարները ճաշի են հրավիրում և դավաճանորեն սպանում. բայց այսպիսի ստոր ճանապարհով կարելի է սպանել աշխարհի ամենահզոր մարդուն անգամ: Արշակին Շապուհը հրավիրում է Պարսկաստան, և նա կամա թե ակամա գնում է ու այնտեղ կորչում, որովհետև Հայոց նախարարները միլիոնավոր պարսիկներ կոտորելով՝ հոգնում են կոտորելուց և վճռում են այլևս չպատերազմել Արշակի համար:

Այսպիսի պատճառաբանություններով է վարագուրում հայրենասեր հեղինակը իր ազգի ու Արշակունի թագավորների աղետները: Ազգի պատվի նախանձախնդրությունը նրան թույլ չի տալիս դառն իրականությունը պարզ խոստովանել:

Կարո՞ղ էր մի օտարազգի պատմագիր այնքան պանծացնել հայոց անպարտելի քաջությունները, նրանց տարած առասպելական հաղթությունները և այնքան սքողել հայերի կրած աղետները: Այսպես կարող էր վարվել միայն ծայրահեղորեն իր ազգը սիրող, նրա պատվին նախանձախնդիր հեղինակը:

## ԼԵԶՈՒՆ ԵՎ ՈՃԸ

Բայց գերազանց վկայությունը հեղինակի հայ լինելուն և հայերեն գրելուն նրա լեզուն է:

Այս լեզուն ամենից առաջ բնական է, ազատ որևէ արվեստականությունից, գեղեցկացնելու կամ զարդարելու ջանքից: Նա հեղինակի մտածողության անմիջական արտահայտությունն է, որ հորդաբուխ դուրս է հոսում: Այս պատճառով նա պարզ է ու ընտանի և կրում է մայրենի լեզվի ամբողջ քաղցրությունն ու հմայքը: Նա կանոնավոր է, ունի դասական կամ, ինչպես ասում են, ոսկեղենիկ հայերենի ընտիր հատկությունները, մանավանդ բառերի գործածության կողմից նրանց վաղեմի նշանակությամբ: Նա ճկուն է և հյութեղ, կրում է լեզվի երիտասարդական հասակի կորովը, ունակ ամեն կերպ թեքվելու և ստեղծագործելու: Ամենահմուտ հայագետն անգամ շատ բան ունի սովորելու այս լեզվի մեջ, որ արտացոլում է հայերենի բուն ոգին: Այս հատկությունները կազմում են Փավստոսի լեզվի ընդհանուր գիծը: Բայց սրանց հետ միասին այս լեզվի մեջ նկատվում են տեսակ-տեսակ անհարթություններ ու անկանոնություններ, ինչպես մի ծաղկավետ դաշտում տեղ-տեղ մարդ պատահում է խոփվների, ցախերի կամ փորփրված հողակոշտերի:

Փավստոսի լեզուն և նրա այս հակառակ հատկությունները գեղեցիկ կերպով բնորոշել է Ա. Այտընյանը իր «Քննական քերականության» «Նախա-

շավիղ»-ի մեջ (էր. 58—59)։ «Աստ (Փ. Բուզանդի) ստուգիվ ոսկեղեն լեզուն, որ գրողին բանաստեղծական անզուսպ ցնորիցը թափովն ամեն գրավոր օրինաց կապանքէ ապստամբ կելլե, ամեն տեղ կրկին իրարու հակառակ հատկությունններ միանգամայն գիտե ճարտարությամբ լծակցել։ Ինչպես որ հիներու սեպհական ամփոփ կարճաբանության հետ միացած են անհավատալի կերպով կրկնաբանություններ, նմանապես ընտիր և խորին հայկաբանության հետ բնական կերպով մը հյուսված է ընտանեկան բարբառը՝ առանց գռեհկանալու. հարթ ու դյուրուկ խոսվածքի մեջ ճշգրիտ նկարներ, կենդանի պատկերներ։ Մանկական պարզությանց մեջ առույգ ոգի և հաճախ խայթող պատմություն մը... Բայց ամենայն ինչ բնական է, առանց արվեստի և արվեստականության, և հարկ է ըսել, թե հոն լոկ բնությունն է խոսողը. վերջապես լեզվակը խորին հայկաբան, քերականական տրամաբանությամբ ճշտիվ ռամիկ, ոճովն ամենևին արևելյան՝ այս եզական գործը բազմապատիկ արժեք ունի»։

Վերը հիշված անհարթությունների մեջ նախ և առաջ նշանակելու է ռամկական կամ հինգերորդ դարի ընտանեկան լեզվի տարրը, բառեր ու դարձվածքներ, որոնք օտար են դասական լեզվին և համապատասխանում են աշխարհաբար լեզվին ու քերականությանը։ Այսպես, Փավստոսի մեջ նկատում ենք հետևյալ ռամկաբանությունները—«ե՛կ, հասի՛ր», «զխախտածն», «ի հնոցն շինած քաղաք», «մտօքն բախած էր», «զտուեալ հրամանս նորա», «զեղեալ ուխտս կատարէին», «ազգի տակի և տոհմի Արշակունեաց», «բան ի գետին ոչ անկանէր», «տարցին յայն տեղ», «ի տեղաց իշխանութեանց իւրեանց», «ես մկրտեալ չէի», «այնչափ զայրացոյց զթագաւորն որ», «թէ կամիք և թէ ոչ կամիք բայց թէ մտածեմ», «հարստացան անցին քստ չափ», «լնոյր զերկիրն վաներով» կամ «վաներաւ», «արի՛ք, յաղօթս կամք», «թող բառնամ», «ո՞վ եմ ես զի կարեմ», «զմեր թագաւորն որո՞վ երեսօք տեսանեմք», «իմ երկու աչքս խաւարեցան», «զայն ժամանակս», «քո կամացըդ», «իւր որդովն», «այս անգամ», «ո՛ր օր հասանէ» և այլն, և այլն (օրինակներն այստեղ մեծ մասամբ քաղված են Ա. Այտընյանի «Քննական քերականության» ներածության ծանոթություններից)։

Սրանց հետ պետք է հիշել մի շարք քերականական անկանոնություններ, ինչպես են՝ «քան զբսան հազարք սատակեցան երդք մարդկան» «ընդ ամենայն տիեզերք», «զիւր զօրքն կազմէր», «ի վանք մի», «ի չորք անկեալ», «անուանեալք էին չեպիսկոպոսունս աղանդոյն», «ուրախութիւն բազում հոգւորս», «մեծ եղև փորձութիւնք նեղութեանց», «առն աստուծոյ սասցեալքն կատարեցաւ», «վասն զմիտս հաճել թագաւորին», «ի ժամանակեւան միոջ», «առ թագաւորաւն հասից», խափան լիցի իւր յառաջև նմա», «նոքիւն վկայիւք», «պատուաւ», «արուեստաց» և շատ ուրիշները։ Սրանք դասական հայերեն լեզվի քերականության տեսակետից պարզ սխալներ են։ Սրանցից մի քանիսը կարող են հետևանք լինել ձեռագրական աղավաղության, սակայն մեծ մասը պետք է համարվի նույն ռամկաբանության երե-

վույթ: Նկատելի են նաև Փավստոսի երկում հաճախակի հանդիպող բառերի կուտակությունը և կրկնությունները: Շատերից բերենք մի քանի օրինակ. «այսպէս պաշարեալք, ընկալճեալք, գելեալք, վանեալք, կծկեալք, ամենեքեան առհասարակ յերկիր անկեալք անքարբառ կային, անխաղացք ի տեղւոջէն»; «Թագաւորեաց սորութիւն՝ յապարասան յանձնասէր, յարծաթասէր ի մոախաւք յանպատուպարան յանպիտան ի սուտակ և ի բանսարկու մարդկանէ», «այլ ոչ ոք էր, որ զառաջնորդութիւն գլխաւորութեան քահանայապետութեանն վերակացութեանն, որ տէրունական տանն հրամանատարութեանն կատարեալ պաշտամանն յաջորդէր»: «Զանարժանս զանկատար, զանջնջելի, զչարեացն մեղացն չմոռացական տանջանացն կատարեաց զգործսն, զանարժանս զանտես զանլուր», «Եւ այն բանքն, որ վասն որսոյն ի թագաւորէն ասացան՝ վաղվաղակի յունկն զօրավարին Պարսից հասանէին ի բերանոյ շորիկն շոգմոգն, տիրանենկն և տիրադրուժն, տիրասպանուն, տիրամատնիչն Փիսակայ, յայն յաշխարհակորոյս յանէ անտի»: «Եթէ զցալգ և զցերեկ նստեալ վարդապետացն և ըստ նմանութեան ամպոցն իբրև զյորդահեղեղ ինչ անձրևաց սաստկութեան զվարդապետութիւն ի վերայ հոսէին, ոչ ոք ի նոցանէն և ոչ մի ոչ, և ոչ մի բան, և ոչ կէս բանի, և ոչ դոյզն յիշատակ ինչ և ոչ նշմարանս ինչ, զոր լսէին, և ոչ կարէին ինչ ունել ի մտի»: «Իսկ այն, որ զնենգութիւն քսութեանց նիւթեաց և դաւով ի վերայ իւրոյ հարազատին սպանութիւնս կատարեաց, վասն նորին կնոջն արար զայն, զի մեծապէս սիրով հարեալ էր ի նմա, զՏիրիթն ասեմ, որ յառաջագոյն հարեալ ի կնոջն յայնմիկ; վասն որոյ զնենգութիւն սպանութեանցն թագաւորաւն գործեաց»: «Սովորութիւն էր՝ Հայոց թագաւորին բազմական անդէն ընդ նմին առ նմա ի նորին տախտին արկանել բազմական, օրէնք էին, զի թագաւորն Պարսից և թագաւորն Հայոց ի միում տախտի բազմէին, ի միում գահոյս»: «Եւ սկիզբն գործակալութեանն, հազարապետութեանն, աշխարհատեսն խնամակալութեանն, աշխարհաշէն աշխարհատած դեհկանութեան՝ շինականաշէն ազգն Գնունեաց, հազարապետն ամենայն երկրին: Նոյնպէս սպարապետութեան սպարապետութեանն զօրավարութեանն մարտի կռուելոյ ռազմիկ ճակատամուղ նիզակին՝ իրափառն ադանազգիք, ադանադրօշք, արծուէնշանք, վարժնականիշք, աներկիւղք, քաջասիրտք նահատակք քաջանունք բարենշանս բարեհամբաւք բարեգործք, յաջողակք ի գործ պատերազմաց... ի Մամիկոնեան ազգին» և այլն:

Այս կուտակություններն ու կրկնությունները նպատակ չունեն խոսքը զարդարելու, գեղեցկացնելու կամ հեղինակի ճարտարությունը ցուցադրելու, այլ ուղղակի բխում են զգացմունքից («ի յաւելուածոյ սրտի խօսի բերան») կամ հետևանք են հեղինակի՝ կանոնավոր դպրոցական կրթություն չունենալուն, կամ որ նույնն է՝ ժողովրդական մարդ լինելուն: Նրանք ևս, իրենց անկանոնությամբ հանդերձ, արժեքավոր են և ժպիտ են հարուցում:

Վերջապես, Փավստոսի գիրքը շտեմարան է հայերեն բառերի: Հարյուրներով պատահում են նրա մեջ բարդ և պարզ բառեր, որոնք միայն նրա մոտ

և մի անգամ են գործածված: Բարդ բառերից շատերը գուցե հենց հեղինակի ստեղծածներն են, իսկ պարզ բառերն առնված են հեղինակին ժամանակակից դասական կամ գավառական լեզվից և ցույց են տալիս, թե բառերով ո՛րքան հարուստ է եղել լեզուն այն ժամանակ և դեռ քանի՛ հարյուրավոր նոր բառեր մենք կունենայինք, եթե Փավստոսի նման երկու-երեք գիրք ավելի գրված լինեին այն ժամանակ:

Բերենք մի փոքր մասն այսպիսի բառերից: Բարդ բառեր.—քանսերթուկ, սրտկեղ, մարմնավար, կարճազատ, չարակեղ, նոյնտհաս... նոյնազգեաց, զկնիազոյն, մեծասքանչելաշուք, առաքելաշնորհ (գոյական), ուղղափառահաւատ, բարիազութ, երախտապարգև, տառապելասէր, պատուիրանակատար, վարձկանագրիչ, խօթապատճառ լինել, ոսկիվարսանդր, նանանցահանդերձ, աղքատակերութիւն, ամօթապարտեալ, շաղաշատութիւն, ամուսնութիւնընկալ, ստացուածաշատութիւն, տիրամատնիչ, աշխարհապաղատ, աշխարհատած, շինականաշէն, հրափառն, աղանազգի, աղանադրօշ, արծուէնըշան, վարժնականիշք, ճակատամուղ, օրհնութիւնսընկալու, զմիմեանսզրկութիւն, զայրցկերութիւն, գամապետ, խոտորկտուրք և այլն:

Պարզ բառեր են.— ճարտուկ, ճանճկէն, սիւս կամ սիւսիք, փոյթ կնջանն, կոտինդ (ն), զարգմանակ, ապիզակ, աթինեալ, տապակեալ, միահանէք կամ միահանեսք, ապրդում, յուրան, մկթալ, առոշոգի, նայեաց (գոյական), մամխի, ժանուար, բանուկան, խաշար, գուգազ, շորին և այլն:

## Ո՞Վ Է ՀԵՂԻՆԱԿԸ

Ո՞վ է այս գրքի հայ հեղինակը՝ չգիտենք: Նա անշուշտ ս. Մեսրոպի ավագ աշակերտներից մեկն է, որ, սակայն, արտասահման չի ուղարկվել բարձրագույն ուսում ստանալու կամ թարգմանելու: Նա Հայաստանի դպրոցի աշակերտ է՝ ուսում առած կրոնական գրքերի և ժամանակագրության սահմաններում, կրոնասեր, բարեպաշտ, հրաշքների հավատացող, միամիտ, դյուրահավան, հայոց եկեղեցու ջերմ պաշտպան: Նա ի բնե սեր է ունեցել հեքիաթային բնույթ կրող պատմությունների: Գուցե իր վարած պաշտոնի շնորհիվ առիթ է ունեցել շրջելու Հայաստանի զանազան վայրերը և ամեն տեղ ախորժանքով լսել է ժողովրդական ստեղծագործությունները՝ հեքիաթներ, սրբերի վարքեր, պատմություններ, զրույցներ, առասպելներ և գրի է առել ամեն ինչ, որ լսել է, սուտ կամ ճշմարիտ, պիտանի կամ անպիտան, բարեպաշտական թե ռամկական: Այսպիսով, հետզհետե գոյացել է մի բավական ընդարձակ ժողովածու տարբեր արժեքի ու բովանդակության պատումներից, թե՛ հայոց և թե՛ օտարների կյանքից: Իր հավաքած նյութը հեղինակը աշխատել է դասավորել ժամանակագրական կարգով, որ, սակայն, քիչ անգամ է հաջողվել, իր կողմից ավելացրել է հոգեշահ խրատներ ու աղոթքներ, և այս կերպով ստեղծվել է այն գիրքը, որ մեզ հասել է Փավստոս Բուզանդի անունով:

## ՓԱՎՍՏՈՍ ԲՈՒԶԱՆԴԻ ԱՆՈՒՆԸ

Բայց որտեղի՞ց է Փավստոս Բուզանդ անունը: Սա կեղծ, հնարովի անուն չէ. այսպես հիշված է հեղինակի Գ դպրության վերջում դրված հիշատակարանում «Կատարեցաւ Երրորդ դարք... ժամանակագիր կանոնք Փաւստեայ Բիւզանդեայ ժամանակագիր մեծի պատմագրի»: Այս Փավստոսը անշուշտ այն Փավստոս եպիսկոպոսն է, որ մի քանի անգամ հիշվում է Պատմության մեջ, նա, որ սարկավագ ձեռնադրեց Ներսես Մեծին (Գ, գ), նա, որ նույն Ներսեսի մարմինը տարավ թաղելու (Ե. իդ), նա, որ Ներսեսի աթոռակիցը, գործակիցն ու խորհրդականն էր, նրա հավատարիմ մերձավորը և ազգով հոռոմ էր, այսինքն՝ բյուզանդացի (Զ, եզ): Գրքի անծանոթ հեղինակը այս նշանավոր եպիսկոպոսին է վերագրել իր աշխատանքը՝ իբրև Ներսեսին ժամանակակից լավատեղյակ և արժանահավատ անձի, որպեսզի իր գրվածքի վարկը բարձրանա ու վստահություն ներշնչի: Նա հետևել է իրենից հազիվ մի տասը տարի առաջ հայոց դարձի պատմությունը գրող, գուցե և իր ընկեր հեղինակին, որ նույնպիսի նպատակով իր հորինած լեգենդական պատմության վրա գրել էր Ագաթանգեղոս անունը, որ իբր թե եղել է ազգով հռոմայեցի և Տրդատի քարտուղար: Եթե անցյալ դարի յոթանասնական թվականներին Գ. Սրվանձտյան եպիսկոպոսը, գրի առնելով «Սասունցի Դավիթ» ժողովրդական վեպը, կասկած էր հայտնում, որ գուցե ուրիշները կծաղրեն իր կատարած գործը, մանկամտություն կհամարեն, կարհամարհեն, որքա՞ն ավելի թերահավատ պետք է լիներ իր գործի նկատմամբ հինգերորդ դարի այս առաջին հայ բանահավաքը, որ ավելի բնական ճաշակով, բնազդով, քան գիտակցությամբ գնահատեց ժողովրդական ստեղծագործություններն ու գրի առավ: Այս պատճառով է, որ նա թաքցրել է իր իսկական անունը և ժողովածուն վերագրել է մի հեղինակավոր անվան, որպեսզի իր աշխատանքը արհամարհանքից ու կորստից փրկի:

## ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆԻ ԷՈՒԹՅՈՒՆԸ

Միայն այս տեսակետից դիտելով Փավստոսի Պատմությունը, այսինքն՝ ընդունելով այն իբրև մի ժողովածու ավանդությունների ու զրույցների, կարելի է լիովին հասկանալ այս գրվածքի էությունը և բացատրել սրա տարօրինակությունները: Այս գրվածքը իսկապես պատմություն չէ, այս բառի սովորական նշանակությամբ, այսինքն՝ որևէ ազգի կյանքում որոշ ժամանակաշրջանում տեղի ունեցած անցքերի հաջորդական պատճառաբանված նկարագրությունը, այլ ժողովածու է զանազան «պատմությունների», այսինքն՝ զրույցների կամ պատմվածքների: «Փաւստոսի Բիւզանդացւոյ Պատմութիւն Հայոց» թվում է հրատարակիչների կամ ընդօրինակողների հորինած վերնագիր է. գրվածքի իսկական և համապատասխան անունը եղել է «Բուզանդարան պատմութիւնք», բնորոշ հոգնակի ձևով, այսինքն՝ պատմությունների ժողովածու Բուզանդի: Նույն հոգնակի ձևը գտնում ենք գոր-

ծածված նաև «Ստորոտում»—«Ստորոտ ամենայն պատմութեանց», այսինքն՝ վերջ բոլոր պատմությունների: Իսկ թե ի՞նչ է նշանակում «Պատմութիւն» Փավստոսի լեզվով, այդ գտնում ենք Գ դպրության վերջը գրված հիշատակարանում. «Կատարեցաւ երրորդ դարբ, քսան և մի պատմութեանց դպրութիւնք», քսանմեկ պատմությունները Գ դպրության քսանմեկ գլուխներն են, ուրեմն, ամեն մի գլուխ պարունակում է մի պատմություն որևէ անցքի մասին: **(«Բուզանդարան» բառի նշանակության մասին տե՛ս ծանոթ. 1:)**

Այս պատմությունները, որ հավաքածու են զանազան անձերի պատմածներից, տարբերվում են միմյանցից թե՛ որակով և թե՛ բովանդակությամբ: Որակը գնահատելը, սուտն ու ճշմարիտը, պիտանին ու ոչ-պիտանին որոշելը պատմական քննադատության գործ է, որը մեր ներածության ծրագրի մեջ չի մտնում: Գալով այդ պատմությունների բովանդակությանը, կարելի է նշանակել Փավստոսի մեջ հետևյալ գլխավոր մասերը:

Պատահում են այստեղ պատմություններ, որոնք ոչ մի կապ չունեն հայոց պատմության կամ հայոց կյանքի հետ: Այսպես են ասորի Հակոբ Մծբնա հայրապետի Արարատ լեռը բարձրանալը և տեսիլքում հրեշտակի միջոցով Նոյան տապանից մի կտոր փայտ ստանալը, որին փափագում էր (Գ, ժ). Վաղես կայսրի հարուցած հալածանքները ուղղափառ քրիստոնյաների դեմ (Դ, ե, զ). Եվսեբիոս եպիսկոպոսի նախանձը ս. Բարսեղի նկատմամբ (Դ, է). Սոփեստեսի տեսած սքանչելի տեսիլքը և Վաղեսի մահը (Դ. ժ):

Պատահում են պատմություններ, որոնց մեջ որևէ օտար անձի պատահած անցքը վերագրված է մի հայի: Օրինակ՝ Ներսես Մեծի ձեռնադրության ժամանակ աղավնին ս. Բարսեղի վրայից վերանալով՝ գալիս հանգչում է նրա վրա (Դ, ե): Այսպիսի դիպված պատահել է մի ոմն Փաբիանոսի, որին այս պատճառով ընտրել են Հռոմի եպիսկոպոս (Եվսեբ., Եկ. պատմ., Զ, իթ.): Ներսես Մեծը հրաժարվում է աղոթել արիանոս Վաղես կայսեր հիվանդ որդու վրա, և երեխան մեռնում է (Դ, ե.): Այս դեպքը պատմում է Սոկրատը (Եկ. պատմ., Դ, իզ) ս. Բարսեղի մասին: Ներսես Մեծը ուրիշ եպիսկոպոսների և հոգևորականների հետ Վաղես կայսրից աքսորվում է մի անապատ կղզի (Դ, զ): Այս աքսորվածների մեջ չէր կարող լինել Ներսես Մեծը, որովհետև այս աքսորին ժամանակակից չէր: Շաղիտա անապատականը շրջում է առյուծների հետ և մի առյուծի թաթից հանում է խրված եղեգը ու թաթը բժշկում է: Նա կոշիկներով ման է գալիս ջրերի վրայով, և կոշիկները չեն թրջվում: Այս բաները պատմված են ս. Երասիմոսի մասին Հարանց վարքում (Ակինյան, «Փ. Բյուզանդի աղբյուրներեն», 142—146): Մամբրեի անապատում մի թերահավատ կրոնավորի տեսած սքանչելի տեսիլքը (Դ, իը) նույնպես առնված է Հարանց վարքից (Գաթըրճյան, «Սրբազան պատարագամատույցք», եր. 94):

Պատահում են սրբերի վարքագրություններ՝ անխուսափելի հրաշքներով, ինչպես են՝ Հակոբ Մծբնա հայրապետը (Գ, ժ), Դանիել քորեպիսկոպոսը (Գ, ժդ). Ներսես Մեծի տեղակալ Խադ Եպիսկոպոսը (Դ, ժբ), Մամբրեի անապատի քահանան (Ե, իդ), Շաղիտան (Ե, ե, զ), Եպիփանը (Ե, իե),

Գինդը և նրա ընկեր անապատականները (Զ, ժզ)։ Պատահում են, վերջապես, կարճ և երկար քարոզներ, վարդապետություններ, աղոթքներ, որոնց նկատմամբ մասնավորապես սեր ունի հեղինակը և հավանորեն ինքն է շարադրել. այսպես են Ներսես Մեծի ընդարձակ խրատ-վարդապետությունը Վաղես կայսեր առաջ, որով հորդորել է նրան ետ կանգնել արիոսական աղանդից, հակառակ դեպքում ինքը կհրաժարվի աղոթել կայսեր հիվանդ որդու առողջանալու համար (Դ, ե), նույն Ներսեսի քարոզն անապատ կղզում (Դ, զ), նրա աղոթքը Նպատ լեռան վրա պատերազմի ամբողջ ընթացքում (Ե, դ), Զվիթի աղոթքը մահապատժից առաջ (Դ, ժէ) և այլն։

## ՋՐՈՒՅՑՆԵՐԻ ԳԼԽԱՎՈՐ ՏԱՐՐԵՐԸ

Վերը հիշված այս տարրերը, որոնք մասամբ հայ ազգին չեն վերաբերում և ընդհանրապես օտար են Պատմության, Բուզանդարանի մոտ մի երրորդ մասն են գրավում. Եթե սրանք մի կողմ թողնենք, մնացածը վերաբերում է մեր ազգին և պարունակում է արժեքավոր հիշողություններ Հայոց քաղաքական ու ընտանեկան կյանքի մասին չորրորդ դարի երկրորդ կեսում, մեծ մասամբ ժողովրդական վեպի բնույթով։ Երեք գլխավոր ճյուղի կարելի է բաժանել այս վիպական նյութը՝ հոգևոր, արքունական տան և Մամիկոնյան տան՝ ամեն մեկը յուր հերոսներով։

## ՀՈԳԵՎՈՐ ՎԵՊ

Հոգևոր վեպի գլխավոր հերոսն է Ներսես Մեծը, որի կյանքն ու գործունեությունը ամեն կերպով զարդարել է ժողովրդի հիշողությունը՝ նրա վրա փոխադրելով բազմաթիվ գործեր ու հատկություններ ուրիշ նշանավոր մարդկանց գործերից։ Արդեն վերը ցույց տվինք, որ նրան են վերագրված ձեռնադրության ժամանակ վրան աղավնի իջնելը, Վաղես կայսեր հիվանդ որդու վրա աղոթել գլանալը, անապատ կղզի աքսորվելը։ Գրիգոր Լուսավորչի կյանքից է առնված նրա Կեսարիա գնալը ձեռնադրություն ստանալու համար և վերադարձը, նրա գործունեության մեջ շատ բան գրված է հետևողությամբ նույն Գրիգորի գործունեության (Փավստ., Դ, գ—Ագ., ճժթ—ճի)։ Նպատ լեռան վրա աղոթելը նմանություն է Մովսես մարգարեի աղոթելուն բլրի վրա՝ Ամաղեկացիների հետ պատերազմելու ժամանակ (Փավստ., Ե, դ.—Ելից, ժէ 8—13)։ Նրա մահն ու թաղումը նմանություն են ս. Սահակի մահվան ու թաղման և այլն։ Ներսես Մեծը Փավստոսի երկի մեջ դուրս է բերված իբրև տիպար արթուն ու առաքինի հոգևոր հովվի։ Նա հոգևոր հայրն է հայ ժողովրդի՝ սկսած թագավորից մինչև հետին մշակը, նրանց առաջնորդը կյանքի մեջ, վարքերը ուղղողը. նա անաչառ լեզու ունի հանդիմանության և չի ակնածում հզորներից։ Նա անիծում է անզեղջներին, և նրա անեծքը անմիջապես կատարվում է, նա բարեկամ և խնամակալ է աղքատներին, տնանկներին, հիվանդներին. Հայաստանի բոլոր գավառնե-

րում հիմնում է աղքատանոցներ, ուրկանոցներ, հյուրանոցներ, որտեղ պետք է պատսպարվեին աղքատները, ուռուկները, օտարականները: Նա մտցնում է բարեկարգություն ամուսնական կարգի մեջ՝ արգելելով մերձավոր ազգականների ամուսնությունը շահադիտական նպատակով, նույնպես և մեռելների թաղման ծեսի մեջ՝ խափանելով սգի վայրենական արտահայտության ձևերը: Խեղճերին ազատում է անիրավ պահանջատերերի ձեռքից, ուր որ գնում է, ամեն տեղ հրաշքներ է գործում, բժշկություններ կատարում, բաց է անում հունարեն և ասորերեն ուսման դպրոցներ՝ հոգևորականներ պատրաստելու համար: Նա նույնիսկ մեռնում է իր հովվական պարտականությունը անթերի կատարելու պատճառով, թունավորվելով Պապ թագավորից՝ նրա պիղծ գործերը հանդիմանելու համար:

Նույն ճյուղին են պատկանում հիշողությունները Վրթանես և Հուսիկ կաթողիկոսների ու Դանիել քորեպիսկոպոսի մասին, որոնք ավելի վիպական բնույթ ունեն, քան պատմական:

## ԱՐՔՈՒՆԱԿԱՆ ՏԱՆ ՎԵՊ

Արքունական տան վեպի գլխավոր անձնավորությունն է Արշակ Երկրորդը, որի կյանքին ու գործունեությանը շատ տեղ է նվիրված Փավստոսի Պատմության մեջ: Վեպի մեջ նա դուրս է բերված անորոշ, խառն բնութագրով: Նա շատ նախանձախնդիր է իր արժանապատվությանը: Երբ Վաղեսը նրա պատգամավոր Ներսես Մեծին աքսորում է, մեղադրելով, որ պատճառ դարձավ իր միակ որդու մահվան, իսկ Արշակի սիրտը շահելու համար ազատ է արձակում իր մոտ պատանդ դրված՝ Արշակի երկու եղբորորդիներին՝ Գնելին ու Տիրիթին, և անհամար գանձեր է նվեր ուղարկում Արշակին, սա արհամարհում է նվերները, պատանդներին արձակելը, նախատինքներ ու բռնաբանություններ է թափում նվերներն ուղարկողի ու բերողների վրա և իր նախատինքի վրեժն առնելու համար վեց ամիս ասպատակում ու ավերում է հունաց երկրները Վասակ զորավարի ձեռքով: Նա քաջ է և հայրենասեր, թույլ չի տալիս, որ Հայաստանի սահմաններից թեկուզ մի կորիի չափ գետին թշնամու ձեռքն անցնի, և այս պատճառով ամբողջ իր թագավորության ընթացքում ոգորում է պարսիկների դեմ ու միշտ հաղթական դուրս գալիս: Նա դյուրահավան է և հեշտությամբ ենթարկվում է ուրիշների ազդեցության. Տիրիթի մատնությամբ նա սպանել է տալիս իր Գնել եղբորորդուն և երբ զգում է, որ զոհ է դարձել Տիրիթի ստոր մատնությանը, զղջում է իր սխալը և սպանել է տալիս Տիրիթին: Նա Մամիկոնյան տան պարսկասեր Վարդան նահապետի թելադրանքով բարեկամանում է Պարսից Շապուհ թագավորի հետ և երդումով դաշն է կապում նրա հետ, բայց հետո Վարդանի եղբոր՝ հունասեր Վասակ զորավարի թելադրանքով դրժում է իր ուխտը և գաղտնի փախչում է Պարսկաստանից: Նա չունի ազգի և իր շահերի համապատասխան քաղաքականություն. երբ հույների և պարսիկների մեջ կռիվ է ծագում, նա սպասում է, թե նրանցից ո՛րը իրեն օգնության պետք է կանչի, որ գնա

նրան օգնելու: Նրա համակրությունը հույների կողմն է եղել, բայց սրանք նրան քանի տեղ չեն դնում, ո՛չ նրանից օգնություն են խնդրում և ոչ մեծարում: Այնինչ Շապուհը կեղծավոր խոսքերով նրա սիրտը շահում է, մոռացության է տալիս նրա երդումը դրժելը և Պարսկաստանից գաղտնի փախչելը, խնդրում է նրանից օգնություն. «Եթե դու մեր կողմը լինես, ասում է, հաղթությունը մերը կլինի»: Արշակը հրապուրվում է ու գնում է իր թշնամուն օգնության և իր բարեկամ հույների զորքերը կոտորում է մինչև վերջին մարդը, առանց պարսկական զորքի մասնակցության: Նա թեթևամիտ է. մի քաղաք է շինում իր անունով (Արշակավան). նրա մեջ ապարանք է շինում իր համար և կամենալով, որ քաղաքը շուտով բազմամարդանա՝ այն հայտարարում է քաղաք ապաստանի, այսինքն՝ ինչ հանցավոր որ փախչի, այդ քաղաքին ապավինի, նրա դեմ դատ չի լինի[1]: Մեծամեծ չարիքների տեղիք տվեց Արշակի այս անխոհեմ գործը: Երկրում բազմացան գողեր, ավազակներ, հափշտակիչներ, որոնք անիրավ գործեր կատարելուց հետո փախչում-ընկնում էին այդ քաղաքը: Պարտապանները, ավանդառուները այդտեղ էին ապավինում՝ պատասխանատվությունից խուսափելու համար. մարդիկ հափշտակում էին ուրիշների կանանց և փախչում այդ քաղաքը: Երկիրը սուգի մեջ մտավ. հառաչելով ասում էին. «Իրավունքը մեռավ մեր երկրում»: Չարիքին վերջ դրեց ժանտախտը, որ մի քանի օրում կոտորեց ժողովուրդը, մյուսներն էլ սարսափահար ցիրուցան եղան: Ժողովուրդը այս պատուհասը վերագրեց Ներսես Մեծի անեծքին:

Խոր վիպական բնույթ է կրում Արշակի վրա գործ դրված հմայությունը Հայաստանի հողով ու ջրով և նույնիսկ պահպանել է վեպի չափական ձևը (Դ, ծդ): Շապուհի դահլիճում Արշակը պարսկական հողի վրա եղած րոպեներին խեղճանում, նվաստանում է, մեղա է գալիս, ուզում է Շապուհի ոտքերը համբուրել, իսկ երբ գալիս են հայկական հող ցանած հատակի վրա, նա խրոխտանում է, սպառնալիքներ թափում Շապուհի վրա՝ մոռանալով, որ Պարսկաստանում է գտնվում, Շապուհի ձեռքում: Մանավանդ հուզիչ է ընթրիքի տեսարանը, երբ Արշակին անարգելու համար վերջին տեղումն են

---

[1] *Ապաստանի տեղեր՝ հուն.* ἄσυλον, *լատ.* asylus, *ֆրանս.* asile, *պարսկ.* bast, *գոյություն ունեին հին ժամանակներից ի վեր և այլ երկրներում. ինչպես հրեաների մեջ իբրև ապաստանի տեղ էր ծառայում տաճարի սեղանի եղջյուրը (Գ. Թագ., Ա, 50), հին Հունաստանում և Իտալիայում՝ աստվածների մեհյանները, աստվածների արձանները, սեղանները, դամբարանները, Պարսկաստանում՝ շահերի ախոռատունը, վերջերը՝ մզկիթը, փոստը և այլն: Ապաստանի տեղի իրավունքը մտավ նաև եվրոպական պետությունների մեջ: Այժմ վերացված է, բայց շարունակվում է դեռ Պարսկաստանում: Արշակ թագավորն էլ, երևի օրինակ առնելով Պարսկաստանից (կամ Հունաստանից), կամեցավ նույնպիսի ապաստանի տեղ դարձնել ամբողջ քաղաքը, որ բնականաբար տեղիք տվեց մեծամեծ զեղծումների:*

նստեցնում, փոխանակ սովորական տեղում՝ Շապուհի կողքին, բայց ոտքերի տակ դարձյալ Հայաստանի հող են շաղ տալիս: Անարգանքի զգացումը ճնշում է նրա հոգին, բայց ներքևից, Հայաստանի հողից, կարծես էլեկտրական հոսանքներ են անցնում նրա մարմնով, գրգռում, զայրացնում են. նա չի կարողանում դիմանալ այս ուժեղ հոսանքներին, վեր է կենում, կանգնում, բարձր ձայնով, բոլոր նստածների առաջ ձայն է տալիս Շապուհին. «Վե՛ր կաց այդտեղից, որ ես այդտեղ բազմեմ, որովհետև մեր տոհմի տեղն է եղել այդ, իսկ եթե իմ երկիրը հասնեմ, քեզանից խիստ վրեժխնդիր կլինեմ»: Նրան շղթաներով կապում են և Անհուշ բերդն աքսորում ցմահ: Որքա՛ն դժբախտ է այս խելակորույս թագավորը և միևնույն ժամանակ որքա՛ն վսեմ: Մայրենի հողը, որի վրա կանգնած է նա, այնքա՛ն հզոր է, այնքա՛ն լցնում է նրան արիությամբ, արժանապատվության զգացումով, որ նա արհամարհում է անխուսափելի կորուստը, հզոր է, քան մահը: Այս սքանչելի վեպը բանալի է դառնում՝ հասկանալու համար վեպի նախորդ անցքերը՝ հայի անպարտելի ուժը թշնամու միլիոնավոր բանակների դեմ կռվելիս ու հաղթահարելիս: Չէ՞ որ այդ կռիվների ժամանակ Արշակը ազատ էր, թագավոր էր և իր բնիկ մայրենի հողի վրա էր գտնվում. նա, իհարկե, անպարտելի պիտի լիներ: Կարծես այս վեպը մի հայկական տարբերակը լինի հունաց դիցաբանության վեպի՝ Անթեոս հսկայի մասին, որի հայրը Պոսեյդոնն էր, իսկ մայրը՝ Գեան (=Երկիրը): Նա բոլոր օտարազգիներին մենամարտի էր հրավիրում և բոլորին հաղթում, սպանում էր, որովհետև իր մորից՝ հողից, շարունակ ուժ էր ստանում: Հերակլեսը նրա հետ մենամարտելիս նրան չէր կարողանում հաղթել, մինչև որ նրան օդի մեջ բարձրացնելով՝ ոտքերը գետնից չկտրեց, և մինչև ոտքերը նորից գետին դնելը խեղդեց: Այստեղ մայր հողը ֆիզիկական ուժ է ներշնչում, իսկ հայկական վեպում մայրենի հողը հոգեկան արիություն, աներկյուղություն է ներշնչում:

Վիպական է վերջապես Արշակի մահվան նկարագիրը, որ գեղեցկությամբ և հոգեբանական ճշմարտությամբ մի աննման ստեղծագործություն է: Մի քանի տարի Անհուշ բերդի զնդանում ապրելով՝ ընտելացել է խավարին, կեղտին, շղթաներին, խղճուկ պարենին, արհամարհանքին: Նա արդեն կորցրել է զգացողությունը: Եվ ահա մի օր հանկարծ բացվում է զնդանի դուռը, ներս է մտնում իր վաղուց մոռացված նախկին սիրելի ներքինին՝ Դրաստամատը, երկրպագում է նրան, դուրս է բերում լույս աշխարհ, արձակում է շղթաներից, լվանում է գլուխը, լողացնում է, մաքրում, ազնիվ զգեստներ հագցնում, ճոխ սեղան բաց անում նրա առաջ, երաժիշտների խմբով ու գինիներով զվարճացնում, ուրախացնում է նրան: Արշակը հետզհետե սթափվում է, վերհիշում է իր անցյալ թագավորական ճոխ կյանքը, ազատության և կյանքի սերը նորից արծարծվում է նրա մեջ: Բայց շատ կարճատև է լինելու այս նոր կյանքը, ընդամենը մի օր, վաղն էլի նույն զընդանը, նույն շղթաները, նույն խավարն ու կեղտը: Գինին նրա գլուխն է զարկել. նա պատկերացնում է այդ թշվառական կեցությունը, որ մի քանի ժամից վրա է հասնելու ընդմիշտ, առանց փոփոխության հույսի: Այդ մտ-

տալուտ կեցությունը նրան այլևս անհանդուրժելի է թվում, նա բացականչում է. «Ո՜, Արշակ, ի՞նչ էիր և ի՞նչ օրի հասար», և դանակը, որով միրգ էր ուտում, խրում է իր սիրտը ու շունչը փչում: Դրաստամատը, որ եկել էր նրան մխիթարելու բարի նպատակով, բայց պատճառ դարձավ նրա անձնասպանության, չի կամենում իր սիրած թագավորից հետո ապրել. դուրս է քաշում դանակը նրա կրծքից և խրում իր կուրծքը: Ինքն էլ անշնչացած ընկնում է նրա կողքին:

Փավստոսի գրքում Արշակ Բ-ի կյանքը լի է դրամատիզմով, նույնիսկ օպերա գրելու արժանի, և կարծում եմ, ապագա սերունդները կտեսնեն լավագույն դրամաներ, օպերաներ ու սիմֆոնիաներ նրա արկածալից կյանքից:

Ողբերգական գծեր է պարունակում նաև Պապ և Վարազդատ թագավորների կյանքը: Պապին ատում էր հոգևորականությունը, որովհետև նա սահմանափակել էր հոգևորականների մեծ արտոնությունները՝ նրանց հողերի մեծ մասը խլելով, նրանց ընտանիքի անդամների մեծ մասին ազատությունից (հարկից ազատ լինելուց) զրկելով ու շինական դարձնելով և Ներսես Մեծի հիմնարկությունների մեծ մասը փակելով: Այս պատճառով նրան ժողովրդական հիշողությունները ներկայացնում են իբրև դևերի նվիրված, մեղքերի ու տեսակ-տեսակ պղծությունների մեջ թավալված և իբրև Ներսես Մեծին թունավորող: Վարազդատի կյանքում փիլիսոփայական բնույթ ունեն նրա բռնակցությունները Մանուելի հետ, մենամարտությունը նրա ու Մանուելի միջև և վերջինիս փախուստը:

## ՄԱՄԻԿՈՆՅԱՆ ՏԱՆ ՎԵՊ

Մամիկոնյան տան ճյուղի վեպերում ամեն մի զորավար մի դյուցազն է, օժտված բոլոր ֆիզիկական և բարոյական հատկություններով, որոնք հատուկ են դյուցազնին: Նրանք հայ ժողովրդի ստեղծած տիպարներն են արիության, քաջության, անվեհերության, վեհանձնության, հայրենասիրության. պաշտպանել հայրենի երկիրը, մի կորիի չափ հող անգամ չզիջել թշնամուն, պաշտպանել եկեղեցիները և եկեղեցական ուխտը, հավատարմությամբ ծառայել բնիկ տերերին՝ Արշակունի թագավորներին, ապրել ու մեռնել նրանց համար՝ սրանք են ամեն մի Մամիկոնյան զորավարի բարձր նպատակները:

Նրանց համար ցանկալի և պանծալի է մահը պատերազմի դաշտում և ոչ թե տանը՝ անկողնում: Ինչպիսի դառնությամբ է գանգատվում հիվանդացած Մանուելը՝ իրեն շրջապատող ազգականներին դիմելով: Բաց է անում մարմինը, ցույց է տալիս անհամար սպիներ խոցվածքներից և ասում. «Մանկությունից ի վեր ես պատերազմների մեջ եմ մեծացել, ամեն վերք հանձն եմ առել քաջությամբ, և ինչո՞ւ ես բախտ չունեցա պատերազմի մեջ մեռնելու, քան թե այսպես անասունի նման մեռնեի» (Ե, խդ):

Նրանց համար նվիրական էր թագավորի անձը, ոչ միայն իրենց՝ Արշակունի թագավորների, այլև օտարների: Մի պատերազմի ժամանակ Աղ-

վանից Ռոնայր թագավորը Շապուհից խնդրում է, որ իրեն թույլ տա աղվանական զորքով ախոյան դուրս գալ Մուշեղ սպարապետի դեմ: Կռվի ժամանակ Մուշեղը հաղթում, ջարդում է աղվաններին: Ռոնայրը փախչում է. Մուշեղը հասնում է ետևից, նիզակի կոթով երկար ծեծում է նրա գլուխը և ասում. «Շնորհակալ եղիր, որ թագավոր ես, թագ ես կրում. ես թագավոր մարդ չեմ սպանի, թեկուզ որքան էլ նեղն ընկնեմ»: Թույլ է տալիս նրան ութ ձիավորով փախչել: Երբ Մուշեղին ամբաստանում են Պապի մոտ, թե նա թշնամի թագավորներին բռնում է և ազատ արձակում, Մուշեղն արդարանում է, ասելով. «Ես իմ ընկերներին բոլորին կոտորեցի, իսկ թագ կրողներն իմ ընկերները չեն, ես թագավոր մարդու վրա երբեք ձեռք չեմ բարձրացրել և այսուհետև էլ չեմ բարձրացնի: Ուզում-ես ինձ սպանիր» (Ե, դ): Սա միակ դեպքը չէ: Մանուել սպարապետը կռվում է Վարազդատ թագավորի դեմ այն պատճառով, որ նա սպարապետության կոչումը Մամիկոնյաններից խլել, իր դայակ Բատ Սահառունուն էր տվել, որ նույն այդ Բատի խորհրդով սպանել էր տվել Մուշեղ սպարապետին, և մանավանդ այն պատճառով, որ Վարազդատը Արշակունի չէ (ըստ երևույթին, Պապի ապօրինի զավակն է): Մանուելը Վարազդատին առաջարկում է Հայաստանից հեռանալ: Նա չի լսում: Կռվի ժամանակ Վարազդատը նիզակով հարվածում է Մանուելի բերանին, շատ ատամներ թափում, և նիզակի տեգը նրա այտը ծակում դուրս է գալիս: Մանուելը նրա նիզակից բռնելով՝ քաշում առնում է նրա ձեռքից և անզեն հակառակորդին առաջ գցած՝ նիզակի կոթով հարվածում է: Որդիները վրա են հասնում, որ Վարազդատին սպանեն, իսկ նա բղավում է նրանց ետևից. «Է՛յ, մի՛ լինեք տիրասպան»: Իր արյունարբու հակառակորդ թագավորի կյանքին խնայում է և նրան Հայաստանի սահմաններից դուրս է քշում (Ե, լէ):

Ինչպես նվիրական է նրանց համար թագավորի անձը, այնպես էլ նվիրական է օտար կնոջ պատիվը: Մի պատերազմի ժամանակ Մուշեղը կոտորում է պարսիկներին և Շապուհի բոլոր կանանց գերի վերցնում: Նա թույլ չի տալիս ոչ ոքի նրանց որևէ անարգանք հասցնել, այլ ծածկավորներ պատրաստել տալով՝ նրանց բոլորին պահապանների ուղեկցությամբ ուղարկում է իրենց ամուսնու՝ Շապուհի մոտ: Մուշեղի այս ասպետական վարմունքն ավելի աչքի է ընկնում, երբ համեմատում ենք նրան Շապուհի հետ և մտաբերում՝ ինչպիսի լկտի անարգանքի էր սա ենթարկում գերի ընկած ազնվական հայ կանանց (Դ, ծը) և Փառանձեմ թագուհուն (Դ, ծե): Չի կարելի չզմայլվել այն անվեհերությամբ, որ ցույց տվեց Վասակ սպարապետը Պարսկաստանում, երբ նրան դատում էր Շապուհը: Երբ Արշակը վերջին անգամ ակամայից Պարսկաստան գնաց Շապուհի կոչին, Վասակը իր սիրած թագավորին մենակ չթողեց, կամեցավ նրան վիճակակից դառնալ: Երբ Հայաստանի հողով հմայությունից հետո Շապուհը Արշակին շղթաներով կապել տվեց և Անհուշ բերդն աքսորեց, հերթը հասավ Վասակին: Շապուհը երգիծանքով հարցնում է նրան. «Աղվե՛ս, այդ դո՞ւ էիր այն խանգարիչը, որ այսքան տարի մեզ չարչարեցիր, դո՞ւ էիր, որ այսքան տարի կոտորում էիր

արիներին, հիմա ինչպե՞ս ես, որ քեզ աղվեսի մահով սպանեմ»: Վասակը թեպետ պարսկական հողի վրա էր կանգնած, չի ստորանում, աղաչանքի, ներման չի դիմում, այլ արժանապատվությամբ պատասխանում է. «Այժմ դու ինձ տեսնելով մարմնով փոքր, իմ մեծության չափը չզգացիր, որովհետև մինչև այժմ ես քեզ համար առյուծ էի, իսկ այժմ՝ աղվես: Բայց մինչ ես Վասակն էի, ես հսկա էի, մի ոտքս մի լեռան վրա էր, մյուս ոտքս՝ մի այլ լեռան վրա. երբ աջ ոտքիս վրա էի հենվում, աջ լեռն էի գետին տանում, երբ ձախ ոտքիս վրա էի հենվում, ձախ լեռն էի գետին տանում»: «Դե ասա, իմանանք, այդ ի՞նչ լեռներ են, որ դու գետին էիր տանում»,— հարցնում է Շապուհը:— «Երկու լեռներից մեկը դու էիր, մյուսը՝ Հունաց թագավորը» (Դ, ծդ): Այս նույն Վասակն էր, որ դրանից առաջ Պարսկաստան եղած ժամանակ Շապուհի ախոռատանը սրով սպանեց ախոռապետին, որովհետև նա անպատկառ կատակով Արշակ թագավորին կոչեց. «Հայոց այծերի թագավոր» (տե՛ս Դ, ժգ): Իր թագավորի պատվին նախանձախնդիր լինելով՝ նա վտանգի ենթարկեց իրեն և ախոռապետին, որ բարձր պաշտոնյա էր, սպանեց: Բայց Շապուհը հավանեց նրա աներկյուղությունն ու տիրասիրությունը և պարգևների արժանացրեց: Այս առյուծ զորավարներն ունեին իրենց արժանավոր կորյուններն: Մանուել սպարապետը պատրաստվում է պատերազմի՝ Մերուժան Արծրունու դեմ: Մանուկ Արտավազդը՝ Վաչեի որդին, նույնպես ուզում է պատերազմին մասնակցել. սպարապետը թույլ չի տալիս, նկատի ունենալով նրա փոքր հասակը. մտրակով թակում է նրա ածիլած գլուխը և պատվիրում կանանց հետ գնալ նշանակված ապահով տեղը: Ճանապարհին Արտավազդը գաղտնի փախչում է և խառնվում պատերազմին: Երբ Մերուժանն սպանվում է, և պատերազմը վերջանում, կովողները ետ են գալիս իրենց սպանած թշնամիների գլուխներով: Գալիս է մանուկ Արտավազդը. նա բոլորից շատ գլուխ է բերել և միայն սրանով է ազատվում մահից՝ իբրև սպարապետի հրամանին անհնազանդ: Նա գործով ցույց է տալիս, որ ընդունակ է կռվելու, ուրեմն սխալ է եղել սպարապետի դրած արգելքը:

Այս օրինակները բավականաչափ ցույց են տալիս Փավստոսի գրվածքի ոգին ու էությունը: Այն ոչ թե պատմություն է այս բառի սովորական նշանակությամբ, այլ ժողովածու է ժողովրդական ավանդությունների, հավաքված տարբեր աղբյուրներից, երբեմն իրական ու ճիշտ պատմական և երբեմն առասպելական, և այս տարբեր տարրերն այնպես հյուսված են իրար հետ, որ դժվար է լինում որոշել՝ որտե՞ղ է վերջանում պատմականը, և սկսվում առասպելականը: Բայց այս առասպելական տարրերը թեպետ անվավերական են իբրև պատմական նյութ, սակայն դրա փոխարեն մեծ արժեք են ներկայացնում իբրև ժողովրդական բանահյուսություն և իբրև այսպիսին հարազատ արտահայտություններ են հայ ժողովրդի իղձերի, ձգտումների, հավատալիքների, սովորությունների: Որավունք ունեն ներկայիս բանասերները, որոնք Փավստոսի Մամիկոնյան հերոսների մեջ նկատում են Սասունցի Դավթին և Սասնա մյուս Ծռերին: Ճիշտ է, Փավստոսի Մուշեղի

մեջ դեռ չկա Դավթի գերմարդկային ուժը, չկան Թուր-Կեծակին, Քուռկիկ Ջալալին, բայց ամենահաղթ հերոսն է, որ պատերազմների մեջ տասնյակ միլիոններով թշնամի է կոտորել. բայց չպետք է մոռանալ, որ Փավստոսի մեջ վեպը Մուշեղի մասին դեռ նոր է ստեղծվել, հազիվ մի հարյուր տարվա զարգացում ունի, այնինչ Դավիթ Սասունցու վեպը դրանից հետո դարձյալ մի քանի հարյուր տարի աճել է ու զարգացել գուսանների կամ վիպասացների մի շարք սերունդների ստեղծագործություններով: Այս պատճառով Փավստոսի գրվածքը պետք է հանել Խորենացի—Փարպեցի—Սեբեոս և այլն զուտ պատմական հիշատակարանների շարքից և զետեղել Ագաթանգեղոսի, Զենոբ Գլակի, Հոհան Մամիկոնյանի պատմական զրույցների շարքում: Դրանք պատմագրության տարբեր ժանրեր են:

## ԽՈՐԵՆԱՑԻ ԵՎ ՓԱՎՍՏՈՍ

Երբ այս ուղիղ տեսակետից նայում ենք Փավստոսի Պատմության էության վրա, մեզ համար լիովին պարզվում է Մ. Խորենացու վերաբերմունքը դեպի այս պատմական հիշատակարանը, որ տեղիք է տվել բազմաթիվ այլընդայլո մեկնությունների: Նախ նկատենք, որ այս երկու հեղինակներն իրենց պատմագրելու հատկություններով կատարյալ հակոտնյաներ են, ծայրահեղորեն իրար հակառակ. Խորենացին ժամանակագրությունը համարում է պատմության անհրաժեշտ հատկություն—«Ոչ է պատմութիւն ստոյգ՝ առանց ժամանակագրութեան»: Այս սկզբունքն ունենալով՝ նա Պատմությունը գրելուց առաջ պատրաստել է ժամանակագրական աղյուսակ Արշակունյաց թագավորության ամբողջ շրջանի համար, որին անշեղ հետևել է Պատմության այս մասում (Բ և Գ գրքերում)՝ նշանակելով ամեն մի թագավորի և կաթողիկոսի գահակալության սկիզբը, վերջը և տևողությունը, և այս մասում ոչ մի սխալ կամ հակասություն չի երևում: Նրա ժամանակագրական սխալը ուրիշ տեղ է՝ հռոմեական և բյուզանդական կայսրների ու Սասանյան թագավորների ժամանակագրական սխալ աղյուսակներում, որոնք իր պատրաստածը չեն եղել, այլ առել է ուրիշ աղբյուրներից. և սրանից են ծագում նրա պատմական ու համաժամանակյա սխալները: Այնինչ Փավստոսը ժամանակագրություն չունի. նրա համար գոյություն չունի ժամանակագրություն. ոչ մի թագավորի կամ կաթողիկոսի տարիները նա չգիտե (բացառությամբ Զ դպրության մի քանի գլխավոր եպիսկոպոսների տարիների, իսկ այս դպրությունը համարվում է անհարազատ). և եթե մարդ փորձում է նրա տվյալների հիման վրա մի ժամանակագրություն կազմել, ստացվում են ակներև անպատեհություններ:

Խորենացու մեջ շատ զարգացած է քննադատական ոգին. նա քննում է աղբյուրները և ընտրում է ինչ որ իրեն արժանահավատ է թվում, քննում է ժողովրդական աղբյուրները, նրանց այլաբանությունները «ճշմարտում» և նրանցից հանում իրական պատմությունը, ինչպես ինքն է հասկանում. նա քննում է անցքերը և որոշում է հավաստին ու կասկածելին. քննում է գործող անձերը, նրանց գովաբանում կամ պախարակում. քննում է նույնիսկ

ինքն իրեն՝ պարծենալով, երբ մի հաջող գյուտ է անում, կամ կասկած հայտնելով իր հաղորդած այս կամ այն տեղեկության ստուգության մասին: Փավստոսը միանգամայն զուրկ է քննադատական ոգուց. ոչ մի տեղ չի նկատվում հեղինակի (=հավաքողի) վերաբերմունքը դեպի իր հաղորդած տեղեկությունը. նա հավասար լրջությամբ ու մանրամասնությամբ գետեղում է իրար կողքի ճշմարիտ պատմականը և անհավատալի սուտը, քաղաքաշտական աղոթքներն ու խրատները և ցոփ ու բամբասակ ննկարագրությունները, հրաշքներն ու իրական դեպքերը, ոչ մի տարբերություն չդնելով նրանց միջև: Նա ընթերցողի զարմանքն է շարժում ոչ այնքան իր պատմածի անհեթեթություններով, որքան պատմողի դյուրահավատությամբ ու միամտությամբ:

Խորենացին ռացիոնալիստ է, գերբնական տարրին տեղ չի տալիս իր Պատմության մեջ. նա եթե իր աղբյուրների մեջ գտնում է որևէ հրաշք կամ գերբնական երևույթ, աշխատում է նրանցից դուրս բերել բնական իրողությունը. նա նույնիսկ հեթանոսական ասովածներին էլ մարդկայնացնում է, ըստ եվհեմերյան փիլիսոփայության: Իսկ Փավստոսի մոտ հրաշքներն առատ են՝ ինչպես սովորական երևույթներ: Հեղինակը այնպիսի հավատով և լրջությամբ է պատմում հրաշքները, ինչպես պառավ տատիկը պատմում է թոռնիկներին հեքիաթների հրաշալի դիպվածները:

Խորենացին իսկական մտածող հեղինակ է. նրա ամեն մի խոսքը չափված է, կշռված է, ո՛չ ավելորդ խոսք, ո՛չ չափազանցություն: Նա հիշում է, ինչ որ ասել է մի անձի կամ դիպվածի մասին և ոչ մի անգամ չի ընկնում հակասության մեջ: Իսկ Փավստոսի մոտ բառերը հեղեղորեն հոսում են, նա հաշիվ չի տալիս իրեն իր գործածած ամեն մի բառի մասին. կրկնությունները ու չափազանցությունները սովորական երևույթ են նրա մոտ: Եվ հաճախ նա ընկնում է հակասությունների մեջ: Օրինակ՝ Մամիկոնյան երկու հարազատ եղբայրներից՝ նահապետ Վարդանից և սպարապետ Վասակից, առաջինը պարսկասեր է, երկրորդը՝ հունասեր: Առաջինը հաջողեցնում է դաշն կապել Արշակի և Շապուհի միջև, երկրորդը կարողանում է Արշակին համոզել, որ այդ դաշինքը խզի և Պարսկաստանից փախչի: Հայաստանում էլ Վարդանը շարունակում է ջանք գործ դնել Արշակին Շապուհի հետ հաշտեցնելու և դաշինքը վերահաստատելու. այս պատճառով Վասակը գնում, նրան սպանում է: Բայց ահա այս նույն Վասակը ոչ միայն չի խանգարում Արշակին՝ օգնության գնալու Շապուհին նրա պատերազմի ժամանակ հույների հետ, այլ հենց ինքն էլ առաջնորդում է հայ զորքին և կոտորում հունաց ամբողջ բանակը, որոնց հետ հայերը այդ ժամանակ ոչ մի տարաձայնություն չունեին: Կամ նույն այս Վասակը, որ երկարամյա պատերազմների ժամանակ հարյուրապատիկ պակաս զորքերով կոտորում է Պարսից միլիոնավոր բանակները, ամբողջ հայկական բանակով գիշերը փախչում է Շապուհի մոտից՝ հույների բանակը բնաջինջ անելուց հետո, այնինչ հեշտությամբ կարող էր գիշերով հարձակվել ոչ մի բանից չկասկածող Պարսից բանակի վրա և բնաջինջ անել Շապուհի հետ միասին: Հեղինակի

մտքովն էլ չի անցել Վասակի այս հակասական գործողությունները համեմատել իրար հետ և այս հակասությունները հարթել։ Նա հավատարմությամբ գրի է առել ավանդությունը։

Խորենացին ձգտում է գրել հավաստի Պատմություն, որի մեջ դեպքերը հաջորդում են միմյանց ժամանակագրական կարգով և ներքին պատճառաբանական կապ ունեն իրար հետ։ Նա դուրս է գցում անհավաստին, նա բաց է թողնում ավելի քան հարյուր տարվա ժամանակաշրջանի հայոց պատմությունը, հայտնելով, թե ոչինչ հավաստի բան չունի պատմելու այդ ժամանակաշրջանի մասին։ Իսկ Փավստոսի երկում դեպքերը կուտակված են անխտիր և խառն, առանց պատճառաբանական կապի կամ ժամանակի հաջորդության. նրա մեջ կան շատ գլուխներ, որոնք ոչ մի կապ չունեն հայոց պատմության և ընդհանրապես պատմության հետ։

Խորենացին խիստ արհամարհում է պարսից առասպելները, կոչելով դրանք *անպիտան, անճոռնի, անհարմար, անճաշակ անքանություն*։ Իսկ Փավստոսի Պատմությունը լիքն է պարսկական ճաշակի առասպելներով։

Այս ներքին բովանդակությանը վերաբերող տարբերությունների հետ նկատելի են և արտաքին՝ լեզվի ու ոճի տարբերությունները։ Խորենացու լեզուն արվեստական է, բարձր, հաճախ գեղարվեստական, երբեմն պարզ ու հասարակ, բայց երբեք գռեհկական ու ժողովրդական։ Փավստոսի լեզուն անկանոն է և անհավասար, պարզ, ընտանի լեզվի կողքին անչափ կուտակություններ, որ տարափի նման տեղում են և ընթերցողին շվարեցնում։ Խորենացին շարունակ ընթերցողի աչքի առաջն է. զրուցում է նրա հետ, իր կարծիքները հայտնում, գնահատում, ուրախանում կամ տխրում։ Փավստոսի գրվածքում հեղինակը բնավ չի նկատվում. նա միանգամայն անանուն է. բացի գրքի խոստաբանությունից և Գ դպրության Ա գլխից, որտեղ անծանոթ խմբագիրն ու հեղինակը խոսում են առաջին դեմքով (մի տեղ եզակի, մյուս տեղ հոգնակի), ամբողջ գրքում չի պատահում «ես» կամ «մեք» բառը։

Այս տարբերությունները կարելի էր դարձյալ շարունակել, բայց այսքանն էլ բավական է՝ ցույց տալու համար, թե որքա՜ն մեծ է զանազանությունը երկու հեղինակների հայացքների միջև պատմական գրվածքի էության և նպատակի մասին։ Այս տեսակետից երկու գրվածքների մեջ սար ու ձորեր կան. մեկը իսկական պատմություն է, մյուսը պատմական զրույցների և վեպերի ժողովածու է, թեպետև այնտեղ պատահում են ստույգ պատմական իրողություններ։ Եվ ինչպես մենք ենք նկատում այժմ այս անհաշտելի տարբերությունները երկու հեղինակների միջև, ավելի ևս նկատում էր Խորենացու խորաթափանց աչքը Փավստոսի գրվածքի և իսկական պատմության միջև։

Սրանից արդեն հեշտ է նախագուշակել, թե ինչպես պետք է վերաբերվեր Խորենացին Փավստոսի գրվածքին՝ Բուզանդարան պատմություններին՝ իբրև պատմական աղբյուրի։ Նա եթե չի հիշում Փավստոսի անունը, նրանից չէ, որ կամեցել է թաքցնել իր աղբյուրը, ինչպես ենթադրել են ոմանք։ Նա

հիշում է Ագաթանգեղոսի անունը և նրանից պատմական նյութ է քաղում (թեպետ զգուշությամբ, բոլորովին բաց թողնելով ս. Գրիգորի չարչարանքները, խոր վիրապ գցվելը, Տրդատի խոզակերպ դառնալը և այլ այսպիսի առասպելական տարրեր), ապա ինչո՞ւ չպիտի հիշեր Ներսես Մեծի մերձավոր խորհրդական և ժամանակակից հեղինակին (ինչպես նա ներկայացված է գրքում), որ գրել է Ագաթանգեղոսի Պատմության շարունակությունը: Նա չի հիշել Փավստոսին բոլորովին այլ պատճառով՝ նրա գրվածքի ոգու և բովանդակության պատճառով, որ լուրջ քննադատության չի դիմանում, ինչպես ասել է Ե. Մ.-ն: Վերը տեսանք ինչպիսի արհամարհանքով է նայում Ղ. Փարպեցին Փավստոսի առասպելախառն Պատմության վրա: Որքա՜ն ավելի խիստ պետք է վերաբերվեր այս Պատմությանը Մ. Խորենացին իր հայտնի քննադատական ոգով: Բուզանդարանի նման ժողովածուն իբրև պատմական աղբյուր հիշելը, Խորենացու կարծիքով, ստվեր կգցեր իր Պատմության վրա: Բայց նա նկատել է Բուզանդարանի խառն առասպելների մեջ նաև պատմական ստույգ տեղեկություններ, որոնցից ազատորեն օգտվել է՝ զգուշանալով աղբյուրը նշանակելուց վերոհիշյալ պատճառով: Նա ամեն բանում չի հետևում Փավստոսին, այլ այնքան միայն, որքան նա ճշմարիտ կամ հավանական է համարում նրա հաղորդած տեղեկությունները: Իսկ ինչ որ նա համարում է անհավանական առասպել, նա հարկավ դեն է գցում և այս դուրս գցած մասերը փոխարինում է ուրիշ տեղեկություններով, որքան ինքը հավանական է համարում կամ գիտե ուրիշ աղբյուրներից: Այնպես որ նա թեպետ Փավստոսից օգտվել է, բայց իր Պատմության մեջ նրանից անկախ է, ինչպես եթե մեկը մի անցքի պատմությունը կարդացել է մի գրքում, բայց այդ անցքը ինքը պատմում է՝ ուղղելով և փոփոխելով կարդացածը ըստ իր հայացքի կամ տեղեկությունների: Այսպես, Խորենացին Գնելի սպանության պատմության մեջ բոլորովին դեն է գցում սիրահարության հանգամանքը և ուրիշ պատճառ է բերում նրա սպանության: Նույնպես նա բոլորովին բաց է թողնում Շապուհի երեսնամյա պատերազմները Արշակի դեմ (Անդովկ նահապետի մեքենայության շնորհիվ), Հայաստանի հողով ու ջրով հմայությունը և ուրիշ պատճառ է բերում Արշակի կործանման, և այսպես շատ օրինակներ: Պատմական քննադատը չի կարող իրավունք չտալ Խորենացուն, որ նա այս վեպերը իբրև պատմական անցքեր չի ընդունել և նրանց տեղ չի տվել իր Պատմության մեջ: Այլ հարց է, թե որքան ճիշտ են այն պատճառները, որոնցով Խորենացին փոխարինել է Փավստոսի հաղորդած տվյալները: Կան դեպքեր, երբ Փավստոսի պատմածը ճշմարիտ է, բայց Խորենացին փոխարինել է սխալ պատմությամբ, ինչպես, օրինակ, Պապ թագավորի սպանությունը ճաշի ժամանակ Հունաց զորավարների թելադրությամբ: Սրա պատճառն այն է, որ Խորենացին չի կարողացել հավատալ, թե Հունաց զորավարները կհամարձակվեին Հայաստանում Հայոց թագավորին ճաշի հրավիրել ու ճաշի ժամանակ դավաճանորեն սպանել, և որովհետև ուրիշ աղբյուր չի ունեցել Փավստոսի հաղորդածը ստուգելու, դուրս է գցել այն՝ իբրև դարձյալ մի ժողովրդական առասպել, և Պապին սպանել

է տալիս Բյուզանդիայում՝ կայսեր հրամանով։ Նկատելի է նույնպես, որ Փավստոսի երկում նկարագրված Մամիկոնյան զորավարների սխրալի գործունեությունը Խորենացու Պատմության մեջ կա՛մ ուրիշ տոհմի զորավարի է վերագրված, կա՛մ լռությամբ մատնված։ Այս երևույթը բացատրում են Խորենացու՝ Մամիկոնյանների նկատմամբ տածած հակակրությամբ. ընդունում ենք, բայց միևնույն ժամանակ չպետք է անտես անենք, որ Փավստոսն էլ իր հերթին ծայրահեղորեն համակրում է Մամիկոնյաններին և չափազանցում է նրանց կատարած դերը Հայոց գործերում, այնպես որ պատմական ճշմարտությունը այլայլված է երկու հեղինակների կողմից ևս, մեկի կողմից թերագնահատվելով Մամիկոնյանների դերը, մյուս կողմից գերագնահատվելով։

Ուրեմն, Խորենացին Բուզանդարանի վրա նայել է քննադատաբար, առել է նրանից այն, ինչ որ գտել է ճշմարիտ կամ հավանական, դեն է գցել այն, ինչ որ համարել է առասպելական կամ սխալ։ Այս է բուն պատճառը Խորենացու և Փավստոս Բուզանդի միջև եղած տարբերությունների. մյուս պատճառները, որ բերել են ուրիշ բանասերներ, ոչ միայն անհիմն են, այլև սխալ եզրակացությունների են հասցնում երկու հեղինակի նկատմամբ էլ։ Այստեղ ցույց տրված այդ տեսակետից նայելով երկու հեղինակների միջև եղած տարբերությունների վրա՝ մենք մի խոշոր օգուտ էլ կունենանք, այսինքն՝ կտեսնենք, թե ժամանակով Փավստոսի գրության ժամանակին մոտ մի նշանավոր հեղինակ ինչպե՛ս է ընդունել նրա պատմածների այս կամ այն մասերը, ճշմարի՞տ է համարել, թե սուտ։ Իհարկե, Խորենացու քննադատությունը կարող է երբեմն նաև սխալ լինել (ինչպես հաճախ սխալ են նրա բերած մեկնությունները ժողովրդական վեպի), բայց, համենայն դեպս, նա հետաքրքրական է իբրև հինգերորդ դարի վերջերի ամենազարգացած հայ հեղինակի կարծիք պատմական այս կամ այն անցքի մասին։ Ուրեմն, Խորենացու Պատմության և Բուզանդարան պատմությունների վրա չպետք է նայել իբրև հակադիր՝ իրար հերքող հիշատակարանների վրա, որոնցից մեկի հաղթությունը նշանակում է մյուսի պարտությունը, ինչպես եղել է մինչև այժմ դարերի ընթացքում, երբ Խորենացու հեղինակությունը բարձր էր, որևէ կասկածից դուրս, իսկ Փավստոսը արհամարհված էր։ Այս երկու վերաբերմունքն էլ սխալ են. Խորենացին և Փավստոսը ոչ թե հակամարտ՝ իրար հերքող հեղինակներ են, այլ պատմագրության երկու տարբեր ժանրի ներկայացուցիչներ. մեկը զուտ պատմական, որ Փավստոսից առել է զուտ պատմականը, որքան ինքն է հասկացել, իսկ Փավստոսը պատմական ավանդությունների, զրույցների և վեպերի հավաքող, որոնց մեջ բուն պատմական տարրերը ճոխացվել են, զարդարվել են ժողովրդական առասպելներով։ Նրանք երկուսն էլ անփոխարինելի, անգին գանձերն են մեր հին գրականության. նրանք ոչ միայն մեկը մյուսին չպետք է տապալեն, այլև պետք է իրար լրացնեն, փոխադարձաբար պետք է ուղղեն մեկի կամ մյուսի մեջ այս կամ այն պատճառով սպրդած սխալները և նպաստեն բուն պատմական իրողությունը վերականգնելուն։

Փավստոսի Պատմությունը մինչև այժմ տպագրված է հինգ անգամ.

Ա տպագրությունը եղել է Հայոց ՌՃՀԹ (=1730 թվականին, հավանորեն Կ. Պոլսում և կրում է վերնագիր՝ «Բիւզանդարան պատմութիւն շարադրեալ Բիւզանդայ Մեծի պատմագրի» և այլն:

Բ տպագրությունը եղել է Վենետիկում 1832 թվականին և կրում է վերնագիր՝ «Փաւստոսի Բուզանդացւոյ Պատմութիւն Հայոց ի չորս դպրութիւնս»: Հրատարակիչները հայտնում են, թե այս տպագրությունը կատարել են հինգ գրչագիր օրինակների բաղդատությամբ, բայց խոստովանում են, թե այդ օրինակները բավական չեն եղել գրվածքի անսխալ տպագրության համար, որովհետև բնագրի ակնհայտ սխալներն էլ այդ հինգ օրինակը մի տեսակ ունեին:

Գ տպագրությունը կատարել է պրոֆեսոր Ք. Պատկանյանը Պետերբուրգում 1883 թվականին, վենետիկյան Բ տպագրությունից, որը բաղդատել է մի նոր գրչագիր օրինակի հետ, որ քիչ է եղել զանազանվելիս վենետիկյան ձեռագրերից:

Դ տպ. կատարվել է Վենետիկում 1889 թվականին (թվում է վերարտատպություն Բ տպագրության):

Ե տպագրությունը կատարել է Գ. Գալստյանը Թիֆլիսում 1913 թվականին: Սա տառացի արտատպությունն է Ք. Պատկանյանի տպագրության:

Զ տպագրությունը կատարվել է Վենետիկում (չենք տեսել): Մի նոր տպագրություն պատրաստում է Կ. Մելիք-Օհանջանյանը պետական Մատենադարանի Փավստոսի բոլոր ձեռագրերի մանրամասն բաղդատությամբ, որը և կլինի Փավստոսի առաջին քննական հրատարակությունը:

Փավստոսի Պատմության երկու թարգմանություն կա օտար լեզուներով:

Առաջինն է ֆրանսերեն թարգմանությունը Մ. Էմինի ձեռքով,— որ մտել է Վ. Լանգլուայի «Հայ պատմագիրներ» ժողովածուի (Collection) առաջին հատորի մեջ, Փարիզ, 1867, և կրում է վերնագիր՝ «Faustus de Byzance. Bibliothèque historique en quatre livres, traduite pour la première fois de l'arménien par Jean-Batiste Emine».

Երկրորդն է Լաուերի գերմաներեն թարգմանությունը, որ լույս տեսավ Քյոլնում 1879-ին՝ հետևյալ վերնագրով.

«Des Faustus von Byzanz Geschichte Armeniens. Aus dem Armenischen übersetzt und mit einer Abhandlung über die Geographie Armeniens eingelates von d-r M. Lauer».

Երրորդն է իմ այս առաջին աշխարհաբար թարգմանությունը[1]:

Երեք թարգմանություններն էլ ունեն ծանոթություններ:

---

*[1] Հաստատ տեղեկություններ կան, որ Խորեն Ստեփանեն, Խորենացու թարգմանիչը, մտադիր է եղել Փավստոսը թարգմանել և մի մասն էլ թարգմանել է. Այս գործը անտիպ է մնացել*

Փավստոսի աղավաղված բնագրի ուղղագրություններ առաջարկված են զանազան անձերից: Ինձ հայտնի են հետևյալները.

Ե. Մ. իր վերոհիշյալ «Փավստոս Բյուզանդ» ուսումնասիրության մեջ առաջարկել է 27 ուղղում:

Գ. Մ. («Բազմավեպ», 1917) առաջարկել է 21 ուղղում:

Նորայր Բյուզանդացին իր «Կորյուն վարդապետ» հետազոտության մեջ առաջարկել է բազմաթիվ ուղղումներ՝ մեծ մասը քերականական սխալների ուղղումներ: Նորայրը ոչ թե ամբողջ Փավստոսն է քննել այս նպատակով, այլ նկատի է ունեցել Փավստոսի երկի այն հատվածները միայն, որ նա համեմատել է ուրիշ հեղինակների համապատասխան հատվածների հետ և միայն այս հատվածներում նկատած աղավաղումներն է ուղղել: Եթե նա ամբողջ Փավստոսը քններ, նրա ուղղումների թիվը անշուշտ շատ ավելի կլիներ:

Հր. Աճառյանն ինձ հաղորդեց, թե ինքը Փարիզում տպագրել է Փավըստոսի Պատմության մոտ 100 ուղղում: Այս հոդվածը ես չեմ տեսել:

Վերջապես, ներկա թարգմանության ժամանակ իմ կողմից ուղղել եմ 39 աղավաղություն և ըստ իմ ուղղածի կատարել եմ թարգմանությունը: Բացի դրանից, վերցրել եմ վերը հիշված ուղղումներից 19 հատ, ամեն անգամ հիշատակելով առաջարկող հեղինակների անունները*:

## ՆԵՐԿԱ ԹԱՐԳՄԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՆԳԱՄԱՆՔՆԵՐԸ

Մի քանի խոսք էլ ներկա թարգմանության մասին:

Երբ Պետհրատը ինձ առաջարկեց Փավստոսը թարգմանել, ես գիտեի, որ Փավստոսի գրաբար բնագիրը շատ աղավաղված է, ուստի ցանկություն ունեցա ձեռագրերի հետ բաղդատված և ուղղված բնագրից թարգմանել: Ինձ հայտնի էր նաև, որ Փավստոսի բնագրի բաղդատությունը մի քանի տարի առաջ հանձնված է եղել երկու անձի, բայց բաղդատությունը կիսատ է մընացել: Դիմեցի Պետական ձեռագրատարանի աշխատակիցներից մեկին և խնդրեցի հանձն առնել այս բաղդատությունը կատարել, բայց նա հրաժարվեց, պատճառ բերելով, որ զբաղված է ուրիշ գործերով: Երևաց նույնպես, որ Փավստոսի բաղդատության և նոր հրատարակության վերաբերմամբ ինչ-որ տարաձայնություն է ծագել երկու հիմնարկների միջև, և գործը կանգ է առել: Ուստի քանի որ ձեռ. Մատենադարանը ձեռագրերը չէր կարող ինձ տալ հետս Թբիլիսի բերելու, ես ստիպված եղա բավականանալ գոյություն ունեցող աղավաղված տպագրությամբ, հույս ունենալով, որ աղճատումները

---

*Այս աշխատութիւնը հրապարակելուց հետո լոյս է տեսել Վարագ Առաքելեանի «Փաւստոս Բուզանդի աշխարհաբար թարգմանութիւնը» հոդուածը (ՀՍՍՀ ԳԱ լեզուի ինստիտուտի «Աշխատութիւնների ժողովածու», հատոր III, 1948), որտեղ նոյնպես առաջարկված են մի շարք ուղղումներ — Խմբ.:*

բավական ուղղեմ իմ ձեռքի տակ եղած ուղղումներով, որոնք քիչ վերը հիշեցի: Միայն այս տարվա ապրիլին, երբ Երևան էի գնացել, Հր. Աճառյանից լսեցի, որ նա պատրաստում է Փավստոսի նոր քննական հրատարակությունը, ձեռագրատան Փավստոսի բոլոր ձեռագրերի մանրամասն բաղդատությամբ, բայց այդ ժամանակ ես արդեն թարգմանել էի գիրքը և գրել ծանոթությունները: Մնում էր առաջաբանը: Թարգմանության ընթացքում ես բազմաթիվ աղճատումներ վերականգնեցի, ինչպես ինձ հավանական թվացին, սրանք բոլորը նշանակված են ծանոթությունների մեջ: Այս ուղղումներից 19-ը վերցրել եմ վերը հիշված աշխատանքներից (Ե. Մ., Գ. Մ., մանավանդ Նորայր Բյուզանդացի): Մնացած 39-ը պատկանում են ինձ (գոնե ես ուրիշ տեղ չեմ պատահել նրանց): Առանց հիշատակության եմ թողել թե՛ իմ և թե՛ այլ բանասերների այն ուղղումները, որոնք լեզվի քերականական ձևերին էին վերաբերում և իմաստի փոփոխություն չէին մտցնում: Այսպիսի ուղղումների հիշատակությունը միտք ունի բնագրի հրատարակության մեջ և ոչ նրա թարգմանության:

Բնագրի վերաբերմամբ էլ ես աննպաստ պայմանի մեջ էի. ձեռքիս ունեի Պատկանյանի հրատարակությունը, բայց չկարողացա ձեռք բերել Վենետիկի 1889 թվականի հրատարակությունը, որ գուցե մի քանի տեղ լավագույն ընթերցվածքներ պարունակեր: Ես ժամանակին խնդրել էի Պետհրատից՝ այս հրատարակությունը մի քանի ամսով ինձ տրամադրել, բայց բավարարություն չգտա[1]:

Նույնպես ինձ չհաջողվեց ձեռք բերել ո՛չ Էմինի և ոչ Լաուէրի թարգմանությունները, որոնք կարող էին ինձ օգտակար լինել՝ աղճատված կամ մութ հատվածները թարգմանելու ժամանակ, կամ գուցե պարունակում էին բնագրի որոշ ուղղումներ, որոնք իմ աչքից խուսափել են:

Փավստոսի լեզուն ընդհանրապես բնական է ու պարզ, նախադասությունները կանոնավոր են կազմված և ոչ ընդարձակ, այնպես որ թարգմանությունը առանձին դժվարություն չի հարուցում: Բայց, ինչպես վերը հիշեցի, այս լեզուն պարունակում է նաև բազմաթիվ անհարթություններ և բառերի կուտակումներ: Երբեմն մի շարք գոյական անուններ հաջորդում են միմյանց միևնույն հոլովով և առանց բայի: Հարկ է լինում այդ գոյականներից մեկը վերածել բայի, մյուս գոյականները այդ նորակերտ բայի հետ կապել իբրև լրացուցիչներ, նախադասություն ստեղծել: Սրանով բնականաբար հեռանում ենք սկզբնագրի ոճից և ստեղծում ենք մեզանից նախադասություն, որ կարող է և ճիշտ չլինել, բայց ուրիշ կերպ վարվել չէր լինի, այլապես կստացվեր նույնահոլով բառերի մի խումբ՝ առանց իմաստի. Էլ չեմ ասում, որ բնագրին համապատասխան այդքան բառ մեր աշխարհա-

[1] *Բայց 1945 հոկտեմբերին կարողացա ձեռք բերել վենետիկյան 1889-ի տպագրությունը և մանրամասն բաղդատելով Պատկանյանի հրատարակության հետ՝ մի քանի աննշան փոփոխություններ կամ լրացումներ մտցրի իմ թարգմանության մեջ։*

բարի բառամթերքում չկա: Այսպիսի դեպքեր համեմատաբար քիչ են պատահում, և աշխատել եմ այս կամ այն միջոցով հաղթել այսպիսի դժվարությունները: Ընդհանրապես աշխատել եմ թարգմանության մեջ պահպանել բնագրի բառերը, ոճերը, արտահայտության ձևերը, որքան թույլ են տալիս մեր այժմյան գրական լեզվի ոգին ու բառամթերքը, նպատակ ունենալով ընթերցողին ճաշակ տալ բնագրի լեզվի և արտահայտության. խուսափել եմ նորակերտ բառերից և այժմ գործածական շատ նոր ոճերից, որոնք օտարոտի կհնչեին Փավստոսի լեզվի մեջ: Տեղ-տեղ գործ եմ ածել գավառական բառեր ու դարձվածքներ, հարմարվելով բնագրի լեզվին: Բայց, իհարկե, անկարելի էր այժմյան գրական լեզվով թարգմանության մեջ լրիվ պահպանել հինգերորդ դարի կենդանի հայերեն լեզվի բույրն ու քաղցրությունը:

Ծանոթությունների մեջ ես սահմանափակվել եմ լոկ բնագրի բացատրությամբ՝ անծանոթ կամ քիչ գործածական բառերի բացատրությամբ, հաշիվ տալով կատարված ուղղումների մասին, մեկնելով հեղինակի այս կամ այն ակնարկությունները: Մի քանի ծանոթություններ կան, որոնց մեջ պատմված են ս. Գրքում հիշատակված անցքեր. սրանք, թերևս, ավելորդ լինեին սրանից քսան տարի առաջ, բայց ես հարկ համարեցի բերել՝ նկատի ունենալով, որ կրոնի ուսուցումը վերացված է դպրոցներից, որով և մեր ընթերցող երիտասարդ սերունդը անծանոթ է այդ անցքերին և առանց այսպիսի ծանոթությունների չէր հասկանա հեղինակի ակնարկությունը: Ուրիշ բովանդակության ծանոթություններ՝ պատմական, աշխարհագրական, համեմատություն ուրիշ հեղինակների հետ, բնագրի քննադատություն և այլն, բաց են թողնված, որովհետև դրանք բանասիրական և պատմական քննադատությանն են վերաբերում, իսկ թարգմանության մեջ ծանոթությունների նշանակությունը շատ ավելի համեստ է, այն է՝ օգնել ընթերցողին հեղինակի գրվածքն ուղիղ հասկանալու: Ջանց եմ արել նույնպես ցույց տալու ծանոթությունների մեջ, թե ս. Գրքի ո՛ր տեղերից են առնված բնագրի քաղվածքները, որոնց թիվը շատ մեծ է: Այս ցուցումները պետք են գրքի գրաբար բնագրի մեջ՝ բնագրաքննական նպատակներով, բայց աշխարհաբար թարգմանության մեջ նրանք նշանակություն չունեն:

ՍՏ. ՄԱԼԽԱՍՅԱՆՑ

*7 Հունիսի, 1941 թ.*

*Թբիլիսի*

# ԲՈՒԶԱՆԴԱՐԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆՆԵՐ[1]

## ՆԱԽԱԳԻՏԵԼԻՔ

*Պատմությունների այս Երրորդ դպրությունը պարունակում է պատմական գրվածքների գլուխներ, և նրան կից կան ուրիշ երեք դպրություններ, այսինքն՝ սրանք չորս մատյան են և չորսն էլ միևնույն անցքերի հիշատակարաններ են, որոնք հիշեցնում են Հայաստան աշխարհի Թորգոմի որդիների պատմությունները, այսինքն՝ անցած եղելությունների շարքը,— գործերն ու վարքերը սուրբ մարդկանց՝ սուրբ քահանայապետների և աշխարհիս տեր Արշակունի թագավորների ու անվանի մարդկանց՝ զորավարների և քաջ նախարարների՝ մինչև նրանց մահը, այլև (երկրի) խաղաղությունն ու պատերազմները, շինությունն ու ավերմունքները, արդարությունն ու անօրինությունը, աստվածապաշտությունն ու անբարեպաշտությունը։ Պատմությունն սկսելով Տրդատի որդի Խոսրովի թագավորությունից մինչև Հայոց թագավորների թուլանալը վերջին ժամանակներում և առաջին քահանայապետ Գրիգորի որդի Վրթանեսի քահանայապետությունից մինչև այն վերջինները, որոնք Հայոց գլխավոր եպիսկոպոսներն էին՝ մի առ մի կարգով, թվով ու համարով, առանձին-առանձին գլխակարգելով նկարագրեցի։ Եվ չորս դպրությունների համար առանձին ցանկեր կազմեցի յուրաքանչյուրի սկզբում՝ մինչև վերջը, որպեսզի օգտվել կարողանան նրանք, որոնք սրտանց փափագում են վերահասու լինել իմ ասելիքներին։*

# ԾԱՆՈԹՈՒԹՅՈՒՆՆԵՐ

1, (Եր. 63). «Բուզանդարան պատմութիւնք»: Փավստոսի Պատմության հեղինակը մի մականուն է կրում, որ գրչության մեջ երկու տարբեր ձև ունի—1. «Բիւզանդ, Բիւզանդացի» և 2. «Բուզանդ, Բուզանդացի, Բուզանդարան»։ Առաջին ձևը պատահում է հենց գրքի վերնագրում—«Փաւստոսի Բիւզանդացւոյ պատմութիւն Հայոց», և Երրորդ դպրության վերջում, որտեղ գրված է. «Կատարեցաւ երրորդ դարգ (տպ. դպրք) Փաւստեայ Բիւզանդեայ մեծ ժամանակագրի, որ էր ժամանակագիր Յունաց»։ Երկրորդ ձևը պատահում է Պատմության չորս դպրությունների վերնագրերում չորս անգամ—«Բուզանդարան պատմութիւնք», նույնպես և Ղ. Փարպեցու Պատմության մեջ երկու անգամ—«Փաւստոս» կամ «Փաւստոս Բուզանդացի»։ Զանց եմ անում ավելի նոր հեղինակները։

Ո՞րն է այս երկու գրությունններից նախնականը, իսկականը։

Նկատի ունենալով, որ «Բուզանդ», «Բուզանդարան», «Բուզանդացի» անհասկանալի ձևեր են, անծանոթ ծագումով ու նշանակությամբ՝ դեռ հին ժամանակ փորձեր են արել այս անծանոթ բառը ստուգաբանել «Բյուզանդ», «Բյուզանդացի» նմանահնչյուն բառերով։ Այս սխալ ստուգաբանության առաջինը պետք է լինի Երրորդ դպրության վերջում գրված տեղեկությունը—«Փաւստեայ Բիւզանդեայ մեծ ժամանակագրի», սակայն այս տեղեկության հեղինակն է ոչ թե գրքի հեղինակ Փավստոսը, այլ նրա Պատմության խմբագրողը, որ այդ ստուգաբանության հիման վրա ավելացրել է՝ «Որ էր ժամանակագիր Յունաց»։ Այնինչ մենք այժմ հաստատ գիտենք, որ Պատմության հեղինակը ո՛չ հույն է և ոչ Հունաց ժամանակագիր, այլ զտարյուն հայ է, հայկական գրույցների հավաքող։ Հետաքրքրական է, որ Ղ. Փար-

պեցին, խմբագրի վերոհիշյալ խոսքից խաբվելով՝ Փավստոսին կոչում է Բյուզանդիայում ուսած մարդ, և չնայելով սրան՝ նա հավատարմությամբ երկու անգամ պահպանել է «Բիզանդացի» գրությունը։ Ուրեմն, իմ կարծիքով՝ վերը հիշված երկու ձևերից սկզբնական՝ նախնականն է «Բուզանդ,— արան,— ացի», իսկ «Բիզանդացի» ձևը նրա անհաջող ստուգաբանությունն է։

Ի՞նչ է նշանակում «Բուզանդ», «Բուզանդարան»։

Ես դարձրի ուշադրություն «Բուզանդ» բառի վրա և գտա նրա մեջ երկու հնդեվրոպական արմատ. առաջինն է սանսկրիտ **bhu, bhav**, սլավոներեն бы, бу, որոնք նշանակում են լինել, գոյություն ունենալ (быть), այս բառից էլ սլավոներեն և ռուսերեն быт, быль, былина=զրույց, առասպել։ Երկրորդ արմատն է զանդ, որից ունենք զանդիկ, զենդ, զենդերեն։ Այս բառն էլ նշանակում է բացատրություն, մեկնություն (изложение, комментарий), այնպես որ ամբողջ «Բուզանդ» բառը պետք է նշանակի եղելությունների, զրույցների մեկնություն կամ բացատրություն, կամ եթե զանդ արմատը վերցնենք իբրև ներգործական բայարմատ, պետք է նշանակի եղելությունների, զրույցների բացատրիչ՝ մեկնիչ։ Ավելի ազատ թարգմանությամբ՝ համապատասխան հայերեն «բանաստեղծ» բառի (վերցնելով «բան», բառի 5 և 7 նշանակությունները ըստ իմ բառարանի). այս բացատրությունից բխում է, որ «Բուզանդ» բառը ոչ թե անձի հատուկ անուն է, այլ աշուղական կոչում, ինչպես հնուց ի վեր սովորություն է եղել, որ մեր աշուղները ընտրել են իրենց համար կոչումներ պարսկական և տաճկական բառերից (Սայաթ-Նովա, Սեյադ, Ջիվանի և այլն), նույնպես վարվել է և անծանոթ Փավստոս հեղինակը, պարսկական «բուզանդ» բառը ընտրելով իբրև աշուղական կոչում։

Սրանով պարզվում է և «բուզանդարան» բառի նշանակությունը, իբրև բուզանդների ժողովածու, նմանությամբ «երգարան», «տաղարան» և այլն բառերի և նշանակում է ժողովածու զրույցների, մեկնության կամ ազատ թարգմանության բանաստեղծության։ «Բուզանդարան» բառին կից «պատմութիւնք» բառը, որ չորս անգամ կրկնվում է (Բուզանդարան պատմութիւնք), իմ կարծիքով «Բուզանդարան» բառի հայերեն թարգմանությունն է, այսինքն՝ ժողովածու պատմությունների, պատմվածքների։

Իմ այս բացատրությունը ես համառոտ կերպով ուղարկել էի Թեհրան, իմ բարեկամ, հմուտ իրանագետ Ռուբեն Աբրահամյանին՝ նրա կարծիքն իմանալու համար։ Նա ինձ նամակով հետևյալը պատասխանեց. «Ձեր Բյուզանդ բառի բացատրությունը շատ սրամիտ է և օրիգինալ։ Միայն, սանսկրիտ **bhu** և սլավոնական бу, бы-ից առաջ, կարծում եմ, պետք է զետեղել բառի իրանական արմատը՝ **bav** և ներկայինը՝ **bu (S. Bartholomae, Altirenisches Wörterbuch**, եր. 917) նույն իմաստով։ Բուզանդ և ամբողջությունը հիշեցնող բառ չգտա... բայց կարծում եմ, թե ձեր բացատրությունը հիշածս հավելումով այնքան գոհացուցիչ է, որ այդ անհրաժեշտ չէ. մանավանդ բառը կազմված է հայկական հողի վրա, ուրեմն նման բառի գոյությունը պարսկերենում պարտադիր չէ»։